Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1
ՀՈՒՆՎԱՐ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ

| | |
|---|---|
| գլխավոր խմբագրի տեղակալ | 52—99—06 |
| պատասխանատու քարտուղար | 52—99—22 |

Բաժիններ

| | |
|---|---|
| մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի | 52—05—58 |
| կուսակցական կյանք | 52—25—43 |
| սոցիալ-տնտեսական պրոբլեմների | 52—57—56 |
| գիտության և կուլտուրայի | 52—99—34 |
| խմբագրության վարիչ | 53—86—11 |
| գրական աշխատողներ | 52—66—77 |



# ՆՈՐ ՏԱՐՎԱ ԴԻՄՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅԱՄԲ

Թանկագին ընկերնե՛ր:

Մի քանի րոպեից Կրեմլի կուրանտները կազդարարեն Նոր տարվա սկիզբը: Դրանք միշտ էլ յուրօրինակ հուզիչ րոպեներ են: Վաղնջական սովորություն է, որ ամեն Նոր տարվա հետ մարդիկ կապում են նոր հույսեր, մտովի ամփոփում անցնող տարվա արդյունքները: Այդ օրը մենք մեր հարազատներին ու մերձավորներին, բարեկամներին ու ընկերներին հասցեագրում ենք Նոր տարվա շնորհավորանքներ և կյանքում ամենաբարի արարումների ցանկություններ:

Ընդունված է համարել, որ աշխատանքը բոլոր սկիզբների սկիզբն է: Կյանքում դա հենց այդպես է: Ես կարծում եմ՝ դուք կհամաձայնեք, որ անցնող 1985 թվականը մեր հիշողության մեջ կմնա որպես լարված աշխատանքի, հույսերի և ապագայի համարձակ մտահղացումների տարի:

Բոլորս էլ լավ ենք հիշում, թե ժողովրդական տնտեսության մեջ ինչպիսի դժվարությունների մենք ստիպված եղանք բախվել տարվա սկզբին: Ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի հսկայական ջանքերը պահանջվեցին գործերը շտկելու և տարին էկոնոմիկայի ասպարեզում ընդհանուր առմամբ ոչ վատ արդյունքներով ավարտելու համար: Ապրած տարին այն ամենն է, ինչ մենք համատեղ արեցինք հանուն ավելի լավ, ավելի արդար, հոգեպես հագեցած կյանքի, հանուն այդ կյանքի սոցիալիստական հիմունքների ու սկզբունքների հետագա ամրապնդման:

Անցնող տարին մեզ համար միանգամայն ուսանելի էր, լի այնպիսի իրադարձություններով, որոնքասես արագացրին ժամանակի վազքը: Մենք ձեռնամուխ եղանք մեծ գործերի, ձեռնամուխ եղանք եռանդով, խանդավառությամբ: Այսօր մենք ավելի պարզորոշ ենք տեսնում մեր հնարավորությունները և իրատեսորեն ենք գնահատում թե այն, ինչի հասել ենք և թե այն, ինչ նախատեսում ենք ապագայի համար: Մենք ուզում ենք լիակատար չափով օգտագործել սոցիալիստական կարգերի հսկայական պոտենցիալը: Խոսքը վերաբերում է որակական հասարակական վերափոխումներին և դինամիկ, վստահ առաջընթացին կյանքի բոլոր կողմերի կատարելագործման ուղիով, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է էկոնոմիկային, մշակույթին, թե սոցիալական ոլորտին:

Բայց, թանկագին ընկերներ, մենք այն ճանապարհի լոկ սկզբին ենք, որ նշել է կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի ապրիլյան պլենումը: Ես կասեի՝ այն բարդ աշխատանքի, խոշոր վերափոխումների ամենասկզբին, որոնք մեզանից պահանջում են է՛լ ավելի մեծ հաստատակամություն, անձնվիրություն, աներկյուղ հրաժարում այն ամենից, ինչ ապրել է իր դարը, հրաժարում մտածողության իներցիայից, սովորական,

բայց այսօր ոչ պիտանի սխեմաներից ու մոտեցումներից: Այժմ մեզ առանձնապես անհրաժեշտ են բարձր հասարակական ակտիվություն, ստեղծագործական աշխատանք, անհաշտ վերաբերմունք թերությունների նկատմամբ, վճռական պաշտպանություն ժամանակի կողմից ծնվող ամենայն նորի, առաջավորի:

Սոցիալիզմը, և դա նրա էությունն է, ստեղծվում է ժողովրդի կողմից և ժողովրդի համար: Մասսաների կենդանի ստեղծագործությունը նրա ուժի աղբյուրն է: Կոմունիստական կուսակցությունը հենց այս դիրքերից է մոտենում մեր բոլոր գործերին ու նախաձեռնություններին: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը զգում են վերջին ժամանակներս ձեռնարկված տնտեսական միջոցառումներին և քաղաքական քայլերին ցույց տրվող համաժողովրդական ակտիվ պաշտպանությունը: Մենք բարձր ենք գնահատում այդ պաշտպանությունը, հասկանում, որ դա շատ բանի է պարտավորեցնում, ոգեշնչում է այսուհետև էլ վստահորեն առաջ ընթանալ այն հասարակության կատարելագործման ուղիով, ուր մենք ապրում ենք:

Սկսվող 1986 թվականը բացում է նոր՝ տասներկուերորդ հնգամյակը: Նրա հետ մենք կապում ենք երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կենսականորեն կարևոր շատ խնդիրների լուծումը:

Տարվա գլխավոր քաղաքական իրադարձությունը կլինի լենինյան կուսակցության XXVII համագումարը: Այժմ ընթանում է նախահամագումարյան փաստաթղթերի համաժողովրդական քննարկումը: Ժողովներում և Կենտրոնական կոմիտե ուղարկված նամակներում սովետական մարդիկ շիտակ, անկեղծ, տնտեսատիրոջ սրտացավությամբ են խոսում երկրի գործերի մասին, այն մասին, թե մեզ ինչն է խանգարում, ինչ պետք է արվի, կոչ են անում անսահմանորեն և եռանդագին շարունակել այժմյան կուրսը: Այսօր մենք իրերն անվանում ենք իրենց անուններով. հաջողությունները՝ հաջողություններ, թերությունները՝ թերություններ, սխալները՝ սխալներ: Եվ այստեղ է սնապարծության ու ինքնահանգստացման հուսալի պատվաստը, այն բանի վստահելի բանալին, որ ստեղծագործական համերաշխ իրադրության մեջ ընթանանք դեպի նոր հաջողություններ, նոր նվաճումներ, դեպի կյանքի նոր որակ, սոցիալ-տնտեսական ու հոգևոր զարգացման նոր բարձունքներ:

Անցած տարի մենք նշեցինք ֆաշիզմի դեմ տարած մեծ հաղթանակի 40-ամյակը: Սրբազան պատերազմի տարիներին մեր ժողովրդի սխրանքի հիշատակն ապրում է ոչ միայն մեր գիտակցության մեջ: Այն մեր սրտերում է: Եվ այն ծանր տարիների կորուստների մորմոքը մեզ պարտավորեցնում է ամեն ինչ անել, որպեսզի աշխարհում երբեք ու երբեք նոր ողբերգություն չբռնկի: Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը, արտահայտելով սովետական ժողովրդի կամքը. ամեն ինչ կանեն պահպանելու խաղաղությունը, կանխելու միջուկային պատերազմի սպառնալիքը, թույլ չտալու անուղղելին:

Այսօրվա աշխարհը բարդ է ու բազմակերպ: Սովետական Միությունը իր քաղաքականության մեջ ելնում է նրանից, որ միջուկային դարում երկրագնդի մարդիկ գտնվում են նույն նավի վրա: Եվ այդ նավը պատերազմական արկածախնդրությամբ ճոճելը խիստ անպատասխանատու բան է: Մեր ժամանակներում ինքը կյանքն է մերժում քաղաքական թեթևամտությունը: Ահա թե ինչու Սովետական Միությունը, մյուս սոցիալիստական երկրները գործը հաստատակամորեն տանում են դեպի խաղաղություն, դեպի միջազգային հարաբերությունների առողջացում, ձգտելով դրանց տալ քաղաքակիրթ բնույթ, ինչպես որ վայել է լուսավորյալ XX դարի մարդկանց: Պետք է վեր կանգնել գժտություններից, բոլոր ջանքերը ներդարկել փոխըմբռնման, վստահության ու զինաթափման ուղիներ որոնելուն:

Սկսվող տարին Միավորված ազգերի կազմակերպությունը հայտարարել է խաղաղության տարի: Մենք Սովետական Միությունում հանդես ենք գալիս այն բանի օգտին, որ այդ խաղաղության տարին վերածվի խաղաղ տասնամյակի, որ մարդկությունը XXI դար թևակոխի խաղաղության, վստահության ու համագործակցության պայմաններում:

Թանկագին ընկերնե՛ր: Սոցիալիզմի արշալույսին Վլադիմիր Իլյիչ Լենինը երջանկություն է անվանել «սովետական պետության կառուցում սկսելը, դրանով համաշխարհային պատմության նոր դարագլխին սկսելը»: Դա եղել և մնում է դժվարին երջանկություն: Եվ մենք հպարտանում ենք, որ մեր պատմությունը, կյանքն ու պայքարը անկապտելի մասն են համայն մարդկության պատմության կյանքի ու պայքարի, որ մղվում է հանուն խաղաղության և սոցիալական առաջադիմության: Մենք հպարտանում ենք, որ դարձանք դեպի նոր հասարակություն տանող անծանոթ ճանապարհի նախագնացները, այդ ճանապարհով ընթանում ենք արժանավայել և վստահորեն:

Դիմավորելով Նոր տարին, մենք սրտագին շնորհավորանքներ ենք հղում մեր բարեկամներին ու դաշնակիցներին, սոցիալիզմի երկրների ժողովուրդներին: Նրանց հետագա հաջողություններ ենք մաղթում նոր կյանքի կառուցման գործում:

Մենք շնորհավորում ենք բարեկամ պետությունների ժողովուրդներին, աշխարհի բոլոր երկրների մեր դասակարգային ընկերներին:

Մենք խաղաղություն, երջանկություն և բարգավաճում ենք մաղթում հոլագնդի բոլոր ժողովուրդներին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի անունից ջերմորեն և ի սրտե շնորհավորում եմ բոլոր սովետական մարդկանց, մեր մեծ հայրենիքի ժողովուրդների համերաշխ ընտանիքի մոտալուտ Նոր տարին:

Նոր տարվա շնորհավորանքներ բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը, պատերազմի ու աշխատանքի վետերաններին:

Նոր տարվա շնորհավորանքներ սովետական ռազմիկներին, որոնք հուսալիորեն պաշտպանում են մեր ժողովրդի խաղաղ աշխատանքը, մեծ Հոկտեմբերի նվաճումները:

Նոր տարվա շնորհավորանքներ բոլորին, ովքեր այս պահին կանգնած են աշխատանքային ու մարտական հերթափոխի, ովքեր աշխատում են հայրենի երկրից հեռու: Եկեք միմյանց մաղթենք, որ սկսվող տարում կատարվեն մեր երազանքները, որ նոր տարին դառնա նոր հաջողությունների, ստեղծագործ աշխատանքի, կայուն խաղաղության և բարեշրջումների տարի: Թող այն ուրախությամբ և երջանկությամբ հարուստ տարի լինի յուրաքանչյուր տան մեջ, յուրաքանչյուր ընտանիքում:

Շնորհավո՛ր Նոր տարի, թանկագին ընկերներ:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թ. դեկտեմբերի 9-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի օրակարգի մեջ լրացումներ մտցնելու հարցը:

Այդ հարցի առթիվ պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Կենտկոմի պլենումը որոշեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարի օրակարգի մեջ լրացուցիչ մտցնել հետևյալ հարցերը.

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի մասին:

ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին:

Պլենումը քննարկեց նաև կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Հ. Մ. Ոսկանյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը ընկ. Կ. Լ. Դալլաքյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը ընկ. Կ. Հ. Ղամբարյանին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար, նրան ազատելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար—Հայաստանի կոմկուսի Կենտկոմի շինարարության ու քաղաքային տնտեսության բաժնի վարիչի պարտականություններից:

Պլենումը ընկ. Ռ. Ա. Արզումանյանին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ:

Պլենումը ընկ. Մ. Հ. Մուրադյանին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար—Հայաստանի կոմկուսի Կենտկոմի շինարարության ու քաղաքային տնտեսության բաժնի վարիչ և նրան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ:

Պլենումը ընկ. Լ. Գ. Սահակյանին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ:

Պլենումը ընկ. Ք. Լ. Մանդալյանին հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ և նրան ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումում ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Դրանով պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ՝ ԱՐԱԳԱՑՈՒՄ

*ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲՈԼՈՐ մարդիկ աշխատանքային ու քաղաքական մեծ վերելքով են դիմավորում ՍՄԿԿ XXVII համագումարը: Նախահամագումարյան ողջ ժամանակաշրջանը հագեցած է նշանակալի իրադարձություններով, որոնք նոր լիցք են հաղորդել սովետական հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի հետագա կատարելագործման նպատակով ժողովրդի և կուսակցության գործադրած ջանքերին: Սովետական հանրապետությունների եղբայրական ընտանիքում ծաղկում ու բարգավաճում է Սովետական Հայաստանը՝ մեծ Հոկտեմբերի ծնունդը: Հանրապետության կոմունիստները դեպի իրենց XXVIII համագումարն են գնում նյութական արտադրության և հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերած նշանակալի նվաճումներով, կոմունիստական արարման ասպարեզում նոր հաջողությունների հասնելու վճռականությամբ:*

*Կենսագործելով ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների որոշումները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան և հոկտեմբերյան պլենումների պահանջներով, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցումներում և ելույթներում առաջադրված հիմնադրույթներով՝ հանրապետության աշխատավորները սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր հիմնական ցուցանիշներով հաջողությամբ կատարեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները: Արդյունաբերության մեջ ապահովվեց ապրանքային արտադրանքի ծավալների ու իրացման աճ: Շատ աշխատավորական կոլեկտիվներ ժամկետից շուտ, մինչև Մեծ հաղթանակի 40-ամյակը կատարեցին տարեկան և հնգամյա առաջադրանքները:*

*Չնայած անբարենպաստ եղանակներին, գյուղատնտեսության աշխատավորները նշանակալի ձեռքբերումներ ունեցան պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու ասպարեզում: Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները գերակատարեցին պետությանը հացահատիկ ու բանջարեղեն վաճառելու պարտավորությունները: Գերազանցվեց խաղողի մթերման՝ 235 հազար տոննայի բնագիծը: Դինամիկորեն զարգանում է հանրային անասնապահությունը:*

*Էկոնոմիկայի աճը ուղեկցվեց նրա տեխնիկական մակարդակի բարձրացմամբ: Անցած հնգամյակում ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերն ավելացան 38 տոկոսով: Արդյունաբերական արտադրության աճը 1985 թվականին կազմեց 5,5 տոկոս և ամբողջությամբ վերցրած հնգամյակում՝ 32 տոկոս, պլանով նախատեսված 30 տոկոսի դիմաց: Պլանից ավելի տրվել է շուրջ 700 միլիոն ռուբլու արտադրանք: Արդյունաբերության մեջ հնգամյակի ընթացքում նոր տեխնիկայի արմատավորման միջոցառումների տնտեսական արդյունքը կազմում է 280 միլիոն ռուբլի:*

*Հանրապետության էկոնոմիկայի դինամիկ զարգացմանը նպաստում է կապիտալ շինարարության լայն ծրագրի իրականացումը: Տասնմեկերորդ հնգամյակում կապիտալ ներդրումների ծավալն ավելացավ 19,6 տոկոսով՝ հնգամյա պլանի հաշվարկներով նախատեսված 5,6 տոկոսի դիմաց: Սակայն չի կարելի բավարար համարել պատվիրատուների, նախագծողների, շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների աշխատանքը կարևորագույն կառույցներում. Չարենցավանի ավտոբեռնիչների գործարանում, «Նաիրիտ»*

գիտաարտադրական միավորումում, Իջևան—Հրազդան երկաթուղագծում, Սուրենավանի նավթաբազայում, Երևանի քիմիական ռեակտիվների, Իջևանի «Բենտոնիտ» գործարաններում և այլն:

Վերջին տասնամյակում հանրապետության էկոնոմիկայում քանակական ու որակական զգալի տեղաշարժեր են կատարվել արդյունաբերական արտադրության ճյուղային կառուցվածքը կատարելագործելու, այն նպատակահարմար տեղաբաշխելու, արտադրողական ուժերը ավելի լրիվ օգտագործելու՝ ՀԿԿ Կենտկոմի մշակած կուրսի հետևողական ու նպատակասլաց իրականացման շնորհիվ:

Մեծ գործ է արվել ձեռնարկությունները տեխնիկապես վերազինելու և արտադրական պոտենցիալը մեծացնելու նպատակով, ինչը հնարավորություն ընձեռեց թողարկվող շատ արտադրատեսակների գծով հասնելու որակական լավագույն ցուցանիշների: Այդուհանդերձ, քիչ չեն այն ձեռնարկությունները, որոնք հնացած արտադրանք են թողարկում: Դրանց թվում, ցավոք, կան արդյունաբերության ռադիոէլեկտրոնային ճյուղերի ձեռնարկություններ, որոնք ժամանակակից արտադրանքի հետ մեկտեղ թողարկում են հնացած արտադրատեսակներ: Իրողություն է և այն, որ հանրապետությունում թողարկվող հաստոցագործիքաշինական արտադրանքն իր տեխնիկատնտեսական ցուցանիշներով ետ է մնում արդի պահանջների մակարդակից: Դանդաղ է յուրացվում հաստոցների նոր, հատկապես թվածրագրային կառավարմամբ, տարատեսակների արտադրությունը: Սարքերի ավտոմատացման, վերահսկման ու չափումների միջոցների որոշ տեսակներ հուսալիության և աշխատառեսուրսի ցածր ցուցանիշներ ունեն, նյութատարությամբ, ֆունկցիոնալ հնարավորություններով և էրգոնոմիկ հատկություններով զիջում են արտասահմանյան համանման նմուշներին: Չնայած ներդրված բազմաթիվ միջոցառումներին, չի ապահովվել տնտեսական արդյունավետությունը, լրիվ հզորությամբ չեն օգտագործվում ավտոմատ, մեքենայացված ու հոսքային գծերը, դանդաղորեն են մոդեռնացվում և նորացվում տեխնիկական սարքավորումները, անհրաժեշտ չափով չի կրճատվում ձեռքի աշխատանքը: Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորումում բարելավված տեխնիկական բնութագրումներով ԱԻ սերիայի էլեկտրաշարժիչների թողարկման նախապատրաստման հետ մեկտեղ արտադրվում են դեռևս երեսուն տարի առաջ մշակված միկրոշարժիչներ:

Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կողմից 1980—1981 թվականներին մշակվել և պետական հանձնաժողովի բարձր գնահատականին են արժանացել «Նաիրի—41», «Նաիրի—42» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների փորձնական նմուշները: Սակայն դրանց թողարկումը «Էլեկտրոն» արտադրական միավորումում ձգձգվեց մինչև 1983 թվականը, իսկ այնուհետև ցածր որակի պատճառով ընդհանրապես դադարեցվեց: Ի դեպ, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի մշակած էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և դրանց հիման վրա կոմպլեքսները մեզ մոտ զգալիորեն ավելի ուշ են ներդրվում, քան երկրի մյուս ձեռնարկություններում:

Ելնելով գիտատեխնիկական առաջադիմության բնագավառում առաջադրված խնդիրներից, որպես կանոն, պետք է սահմանել այնպիսի կարգ, ըստ որի մեքենաների, սարքերի և այլ բարդ արտադրանքի փորձնական նմուշները պատրաստվեն անմիջականորեն արտադրական այն միավորումների մասնակցությամբ, որտեղ նախատեսվում է դրանց սերիական թողարկումը: Այսպիսի օրինակներ մեզանում կան և, անկասկած, դա կկրճատի նախագծի մշակումից մինչև սերիական թողարկումն ընկած ուղին:

Անցած հնգամյակի տարիներին արդյունաբերական արտադրության ճյուղերի զարգացման համար հատկացվել են մոտ երեք միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ: Ստեղծվել են նոր, հեռանկարային ուղղություններ՝ թողարկվող արտադրանքի տեխնիկական բարձր մակարդակով: Կատարվել են մի շարք կարևորագույն ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման աշխատանքներ:



Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1986 թվականի պետական պլանը և տասներկուերորդ հնգամյակի մշակված նախագիծը բխում են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան ու հոկտեմբերյան պլենումների, ՀԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա մայիսյան ու նոյեմբերյան պլենումների որոշումներից, գիտատեխնիկական առաջադիմության արագացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի արտահայտած սկզբունքային հիմնադրույթներից:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագիծը հսկայական քաղաքական նշանակություն ունեցող փաստաթուղթ է: Այդտեղ բացահայտված է կուսակցության տնտեսական ստրատեգիան, նյութականացվում են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի դրույթները՝ դրա իրականացման արդի փուլին համապատասխան:

Նախագիծը հիմնականում համապատասխանում է ժողովրդի բարեկեցության բարձրացման, մեր հայրենիքի տնտեսական պոտենցիալի և նրա պաշտպանական հզորության ամրապնդման պահանջներին:

Ժողովրդի կյանքի նյութական ու հոգևոր մակարդակի անշեղ բարձրացումը եղել և մնում է կուսակցության քաղաքականության բարձրագույն նպատակը: Այդ վսեմ նպատակի իրականացումը պահանջում է արագացնել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը, գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա ըստ ամենայնի ինտենսիվացնել և բարձրացնել արտադրության արդյունավետությունը: Խնդիր է դրված երեք հնգամյակների ընթացքում որակապես նոր աստիճանի հասցնել արտադրողական ուժերն ու արտադրական հարաբերությունները, ստեղծել այնպիսի արտադրական պոտենցիալ, որն իր մասշտաբներով հավասար լինի բոլոր նախորդ տարիների կուտակվածին:

Հիմնական ուղղություններում սահմանված են նաև Սովետական Հայաստանի տնտեսական ու սոցիալական զարգացման բնագծերը: Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը նախատեսվում է ավելացնել 24—26 տոկոսով, իրականացվելու են մեքենաշինության, քիմիական ու թեթև արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արդյունաբերության մի շարք գործող ձեռնարկությունների վերակառուցում, տեխնիկական վերազինում և ընդլայնում: Ծավալվելու է հանրապետության ատոմային էլեկտրակայանի երկրորդ հերթի, Վարդենիս—Ջերմուկ երկաթուղագծի շինարարությունը, կառուցվելու են ծրագրավորող հրահանգասարքերի արտադրության, ավտոմատ մանիպուլյատորների համար հիդրոսարքավորումների, հատուկ տեխնոլոգիական սարքավորումների արտադրության գործարաններ, ինչպես նաև տրիկոտաժաքաթանի ֆաբրիկա Ղափանում: Ընդլայնվելու են տրիկոտաժի և կաշվե կոշիկի արտադրության կարողությունները: Նախատեսվում է գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը մեծացնել 12—14 տոկոսով: 1990 թվականին հացահատիկի արտադրությունը հասցվելու է 330 հազար տոննայի, խաղողինը՝ 350 հազար տոննայի, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 240 հազար տոննայի, մսինը (սպանդային քաշով)՝ 130 հազար տոննայի, կաթինը՝ 625 հազար տոննայի, ձվինը՝ 680 միլիոն հատի: Վերակառուցվելու են ոռոգիչ համակարգերը, հնգամյակում շահագործման են հանձնվելու 35 հազար հեկտար ոռոգվող հողեր:

Երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և ռեգիոնների կարևորագույն խնդիրներից են սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման հետ կապված բազմազան միջոցառումների իրագործումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և ծառայությունների ոլորտի զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագրի հետևողական իրականացումը: Դա, անշուշտ, կնպաստի ավելի լրիվ բավարարելու սովետական մարդկանց հարաճուն նյութական պահանջմունքները, ուժեղացնելու սոցիալական միջոցառումների ներգործությունը արտադրության զարգացման, դրա արդյունավետության բարձրացման վրա:

Կուսակցության ընթացիկ քաղաքականության կարևոր առանձնահատկու-

*Մեր հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում ծնվում են նորանոր առաջադիմական արժեքներ, որոնք նպաստում են Սովետական Հայաստանի աշխատավորների հայրենասիրական ու ինտերնացիոնալ գիտակցության հարստացմանը։ Այդ իրողություններից է այս տարվա հունվարից «Լենինյան ուղիով» ամսագրի հրատարակումը նաև ռուսերեն, մի հանգամանք, որն ունի կարևոր նշանակություն հանրապետության կուսակցական կազմակերպության, բոլոր կոմունիստների և աշխատավորների հոգևոր անշեղ աճի համար։ Մեր ամսագրի միջոցով համամիութենական ընթերցողը ավելի մոտիկից կծանոթանա Սովետական Հայաստանի բազմաբեղուն կյանքին, նրա կուսակցական կազմակերպությունների գործունեությանը։ Դա անհամեմատ կբարձրացնի խմբագրության հեղինակային ակտիվի պատասխանատվությունը հրապարակման ներկայացվող նյութերի նկատմամբ, խմբագրական կոլեգիային կպահանջի ավելի ջանադիր աշխատանք տանել հեղինակների հետ, ընտրել նոր, ստեղծագործական կարող ուժեր, ընդլայնել և ավելի բազմազան դարձնել ամսագրի թեմատիկան։*

*Ամսագրի միութենական ասպարեզ դուրս գալն ավելի կամրապնդի ու կխորացնի մեր ստեղծագործական կապերը Մոսկվայի, Լենինգրադի գիտատեսական կենտրոնների, միութենական մյուս հանրապետությունների համանման հանդեսների և հեղինակների հետ, ավելի հաճախակի կդարձնի թեմատիկ համարների լույսընծայումը, համապատասխան նյութերի փոխանակումը։*

*Նոր հնգամյակի շեմին կկայանան Հայաստանի կոմկուսի XXVIII և ՍՄԿԿ XXVII համագումարները։ Այդ նշանակալի իրադարձությունները հանրապետության աշխատավորները դիմավորում են նորանոր հաջողություններով, ռեալ նախադրյալներ են ստեղծում տասներկուերորդ հնգամյակի հաջող մեկնարկի, գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար։*

---



# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ՝ ԱՐԴԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, *աշխատավորական կոլեկտիվները լայնորեն նախապատրաստվում են ՍՄԿԿ XXVII համագումարին, երկրի ապագայի համար խորին շահագրգռությամբ քննարկում Կենտրոնական կոմիտեի նախահամագումարյան փաստաթղթերը։ Սովետական մարդիկ հստակորեն ըմբռնում են, որ համաժողովրդական քննարկման են դրված սոցիալիստական հասարակության տնտեսական, քաղաքական, սոցիալական ու հոգևոր կյանքի հասունացած հարցերը, որ կուսակցությունը կոչ է անում վճռականորեն վերանայել այն ամենը, ինչ իրեն չի արդարացրել, ինչը հնացել ու արգելակում է մեր առաջընթացը։ Հիրավի նոր հեռանկարներ են բացվում ստեղծագործական նախաձեռնության, համարձակ որոնումների համար, թերությունների անկեղծ ու սկզբունքային քննադատության համար։ Եվ միանգամայն օրինաչափ է այն գործարար տրամադրությունը, որով աշխատավորները վերլուծում են կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների բոլոր օղակների պրակտիկ գործունեությունը, հանդես գալիս արժեքավոր առաջարկություններով, նշում գործերը բարելավելու միջոցներ այնտեղ, որտեղ դա անհրաժեշտ է։*

*Կուսակցական փաստաթղթերում, տնտեսական, քաղաքական ու սոցիալական կյանքի կատարելագործման գլխավոր ուղղությունների հետ մեկտեղ, սահմանված են նաև կենսագործունեության հոգևոր ոլորտի հիմնական խնդիրները։ «Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ անխզելիորեն կապված են նաև ծրագրային հիմնադրույթները գաղափարախոսական աշխատանքի բնագավառում,— ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. հոկտեմբերյան պլենումում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը։— Հարկավոր է մարդկանց դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, դաստիարակել ճշմարտացի խոսքով ու ռեալ գործով, քաղաքական լուսավորությունը, գաղափարական ազդեցությունը միավորելով տնտեսական և սոցիալական հարցերի լուծմանը, պետության, արտադրական ու հասարակական գործերի կառավարմանը աշխատավորների ավելի ու ավելի ընդլայնվող մասնակցության հետ»։*

*Կուսակցությունը պահանջում է, որ ներկա փուլում, ինչպես երբեք, դաստիարակչական աշխատանքում սկզբունքայնությունը, գործարարությունն ու հետևողականությունը ուղեկցվեն քաղաքական բարձր զգոնությամբ, տեղի ունեցող իրադարձությունների և երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցմամբ, դասակարգային թշնամու գաղափարախոսական զինանոցի համակողմանի ուսումնասիրմամբ։ Այդ աշխատանքի ուժեղացման անհրաժեշտությունը կուսակցությունը կապում է աշխարհում տիրող իրադրության հետ, միջազգային ասպարեզում իմպերիալիստական ուժերի գործունեության սթափ գնահատականի հետ։ Վերջերս Ժնևում տեղի ունեցած սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումները ցույց տվեցին, որ, չնայած ամերիկյան*

վարչակազմի դիրքորոշման որոշ դրական տեղաշարժերին, դեռ վաղ է նրա քաղաքական մտածողության և քաղաքական վարքագծի լուրջ վերակառուցում ակնկալելը: Դրանով էլ, ըստ էության, պայմանավորված է գաղափարախոսական պայքարի շիկացածության պահպանումը, պայքար, որն աննախադեպ թափ ստացավ հենց 80-ական թվականների սկզբից:

Սովետական հասարակության առջև կուսակցության դրած խնդիրների լույսի ներքո, ինչպես և գաղափարախոսական բարդ իրադրությունը հաշվի առնելով՝ հանրապետության կուսակցական կազմակերպությունները շարունակում են եռանդուն միջոցներ ձեռնարկել հակապրոպագանդայի համակարգը կատարելագործելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի պահանջների իրականացման նպատակով: 1984 թվականի վերջերին քննարկելով «Հայաստանի Հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» հարցը, կուսակցության Կենտրոնական կոմիտեն ընդունեց համապատասխան որոշում, որտեղ մեր գործունեության, այդ թվում և վրիպումների ու բացթողումների սկզբունքային կուսակցական գնահատականի հետ մեկտեղ ցույց էին տրված դրանց վերացման կոնկրետ ուղիները: Հանրապետության կուսակցական կազմակերպությունը զինվեց մոբիլիզացնող մեծ ուժի փաստաթղթով:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հանրապետության կուսկազմակերպությանը պարտավորեցրեց գործուն միջոցներ ձեռնարկել բացահայտված թերությունները վերացնելու համար, նշեց աշխատավորների մոտ մարքս-լենինյան աշխարհայացքի, հասարակական երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման ավելի հետևողական ձևավորման, նրանց սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը: Դրանով իսկ ուժգնորեն խթանվում էին քաղաքական-դաստիարակչական աշխատանքի շատ ուղղություններ, որոնք, իրենց հերթին, հակապրոպագանդայի ողջ համալիրի ստորոգելիներն են կազմում:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ընդունումից մեկ տարի է անցել, բայց բոլոր հիմքերը կան ասելու, որ դրա իրականացման նպատակով որոշակի աշխատանք է կատարվել: Կուսակցական կազմակերպությունները, մասսայական ինֆորմացիայի միջոցները, գաղափարախոսական մյուս հաստատությունները հակապրոպագանդիստական աշխատանքի մեջ ներմուծել են ոչ քիչ նոր ու արժեքավոր բան, և դա հնարավորություն է ընձեռել այն բարձրացնելու կառուցվածքային-կազմակերպական ու գիտամեթոդական նոր մակարդակի: Այդ աշխատանքի ծանրության կենտրոնը ավելի ու ավելի է տեղափոխվում աշխատանքային կոլեկտիվ:

Աշխատանքային կոլեկտիվներում գաղափարախոսական ողջ գործունեության միջուկը հանրապետության կուսկազմակերպությունները համարում են աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներով դաստիարակելը, նրանց մոտ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, բարոյական վսեմ հատկանիշների և համոզմունքների ձևավորումը:

Այստեղ կարևոր տեղ է տրվում թշնամական գաղափարախոսական դիվերսիաների հանդեպ հանրապետության աշխատավորությանը դասակարգային կայուն անընկալությամբ համակելուն, որը ենթադրում է հասարակական զարգացման ընթացքի հեռանկարների խոր ըմբռնում, երկրում և արտասահմանում կատարվող իրադարձությունները մարքս-լենինյան ուսմունքի դիրքերից գնահատելու, բուրժուական պրոպագանդայի խորամանկումները հստակորեն հասկանալու ունակություն: Իսկ այդ նպատակին հասնելու ասպարեզում լուրջ հաջողության ակնկալելն այսօր անհնար է՝ առանց գաղափարախոսական իրավիճակը կազմավորող բոլոր գործոնների համակողմանի հաշվառման, առանց աշխատավորական կոլեկտիվում հակապրոպագանդիստական աշխատանքի կոմպլեքսային պլանավորման մեջ դրանց ակտիվ օգտագործման:



Ղեկավարվելով այս սկզբունքով, հանրապետության կուսկազմակերպությունները պրակտիկայում ներդրել են իր բարդ փոխկապակցություններով ու առանձնահատկություններով հանդերձ գաղափարախոսական իրավիճակի վերլուծման հետաքրքրական փորձ, որը հնարավորություն է ընձեռում էապես բարձրացնելու գաղափարախոսական պրոցեսի կառավարման մակարդակը, ապահովելու գիտական մոտեցումը աշխատանքային կոլեկտիվներում պրոպագանդայի և հակապրոպագանդայի դրվածքի նկատմամբ:

Այդ անալիտիկ կառուցվածքում կարևոր տեղ է գրավում հանրապետության ամեն մի քաղաքի ու շրջանի համար կուսակցական կոմիտեների մշակած գաղափարախոսական աշխատանքի անձնագիրը: Հայաստանի Կոմկուսի Կենտկոմում մշտապես ստացվող ինֆորմացիոն հաշվետվությունների շնորհիվ, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների զանազան փաստաթղթերի, աշխատավորական նամակների բովանդակության, ինչպես նաև միասնական քաղօրերի և այլ մասսայական միջոցառումների ժամանակ արված առաջարկությունների ու քննադատական դիտողությունների վերլուծության միջոցով կատարվող սոցիոլոգիական հետազոտությունների, կուսակցական աշխատողների անձնական դիտումների հիման վրա նշված անձնագրերում կուտակվում է արժեքավոր, համակողմանի ու հարուստ նյութ, որը հնարավորություն է ընձեռում հանգամանալի ինֆորմացիա և ռեալ պատկերացում ունենալու տվյալ շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական բնութագրերի, ժողովրդագրական և սոցիալ-քաղաքական պրոցեսների մասին, որոնք իրենց մեջ ներառում են ձեռնարկությունների քանակն ու բնույթը, պլանների կատարման վիճակը, բնակչության ազգային ու սոցիալական կազմը, հայրենադարձների թիվը, աշխատավորական կոլեկտիվների կուլտուրական, գիտական, պրոպագանդիստական պոտենցիալը, քաղաքական, տեխնիկական ու հանրակրթական մակարդակը, ինչպես նաև սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացման մակարդակը, վարչական խախտումների դինամիկան և այլն:

Ինֆորմատիկայի ամփոփիչ համակարգի հարստացման մյուս կարևոր միջոցը, գաղափարախոսական աշխատանքի կոմպլեքսային պլանավորման ու կառավարման գործում մեր ելակետային դիրքերի սահմանման, ընթացիկ մոմենտի և հեռանկարի հաշվով գործնական հանձնարարականների մշակման հուսալի աղբյուրը սոցիոլոգիական հետազոտությունների միջոցով հասարակական կարծիքի ուսումնասիրությունն է:

Կուսակցական կոմիտեները լայնորեն օգտագործում են բնակչության՝ պարբերաբար անցկացվող սոցիոլոգիական հարցումների արդյունքները. այդ հարցումները նպաստում են գաղափարախոսական ռեալ իրավիճակի առանձնահատկությունների բացահայտմանը, մասնավորապես պատկերացում են տալիս գաղափարախոսական մի շարք հրատապ պրոբլեմների վերաբերյալ հասարակական կարծիքի, հասարակական գիտակցության վիճակի, արտասահմանյան պրոպագանդայի նկատմամբ աշխատավորների վերաբերմունքի, բնակչության տարբեր խավերի վրա դրա ներգործության աստիճանի մասին:

Կոմպլեքսային վերլուծություն անցկացնելիս կուսակցական կոմիտեները պատշաճ ուշադրություն են նվիրում այնպիսի մի հարցի, ինչպիսին բնակչության պատմաժողովրդագրական առանձնահատկություններն են, որոնք բավականաչափ ուժեղ և կայուն ներգործություն ունեն հանրապետության գաղափարախոսական իրավիճակի վրա. դրանք նկատելիորեն հեշտացնում են մեր հակապրոպագանդիստական աշխատանքը, շեշտակիորեն բարձրացնում նրա արդյունավետությունը, բայց և, դրա հետ մեկտեղ, ստեղծում են որոշակի պրոբլեմներ, որոնք մենք իրավունք չունենք անտեսելու մեր պրոպագանդիստական գործունեության ընթացքում:

Ընդարձակ և իր բնույթով բազմապլան ինֆորմացիա ժողովելու, դրա վերլուծության ու ընդհանրացման հիման վրա, ինչպես նաև ղեկավարվելով պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով ու հիմնադրույթներով, որոնք պա-

ներ, սահմանվում են նրանց իրավասության հարցերի լուծման ժամկետները, ապահովվում է լայն հրապարակայնությունը։

Անցյալ տարվա սեպտեմբերին Կենտկոմը քննարկեց հանրապետությունում միասնական քաղօրերի անցկացման պրակտիկայի և աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության գործում դրանց դերի ուժեղացման հարցը։ Կենտկոմի քարտուղարությունում կանոնավոր կերպով քննարկվում են ստացվող նամակների ու դիմումների հետ կապված հարցեր։ Որոշում է ընդունվել հանրապետության ղեկավար մարմինների գործունեությանը աշխատավորներին տեղեկացնելու դրվածքի հետագա բարելավման մասին։

Նման միջոցառումների շնորհիվ, որոնք լրացվեցին քաղկոմ-շրջկոմներին, ժողովրդական դեպուտատների սովետներին և մասսայական ինֆորմացիայի միջոցներին տրված համապատասխան ցուցումներով, որոշակիորեն բարելավվում է գործերի վիճակն այս բնագավառում. էապես կրճատվել է կուսակցական կոմիտեներում ստացվող նամակների ու բողոքների քանակը։ Սակայն ձեռնարկված միջոցները ինքնահանգստացման որևէ հիմք չեն տալիս։ Աշխատավորների դիմումներում դեռևս մեծ է տրանսպորտի, առևտրի, սպասարկման ոլորտների, շինարարության որակի, բնակտարածությունների բաշխման վերաբերյալ կշտամբանքների քանակը։

Գաղափարախոսական պայքարն այսօր ներառում է այնպիսի ոլորտներ, որոնք, թվում է, քաղաքականության հետ հեռավոր առնչություն անգամ չունեն։ Այստեղ, իհարկե, մանրուքներ չկան և չեն կարող լինել։ Վերցնենք այնպիսի մի հարց, ինչպիսին արտադրանքի որակն է։ Կուսակցությունն իրավացիորեն այն դիտում է իբրև ոչ միայն տնտեսական, այլև գաղափարախոսական աշխատանքի կարևոր տեղամաս, որը պահանջում է ինչպես մինիստրությունների ու գերատեսչությունների, այնպես էլ արտադրական կոլեկտիվների սևեռուն ուշադրությունը։ Բնորոշ է կոշիկի «Մասիս» արտադրական միավորման օրինակը։ Հանրապետության թեթև արդյունաբերության հսկան տարեկան թողարկում է ավելի քան 17 միլիոն զույգ կոշիկ։ Նրա արտադրական կոլեկտիվներում հավասարապես բարձր հիմքերի վրա են դրված ինչպես գաղափարաքաղաքական աշխատանքը, այնպես էլ բարձրորակ արտադրանքի համար ծավալված հայրենասիրական շարժումը։ Այստեղ կուսակցական կոմիտեն հմտորեն կիրառում է գաղափարախոսական աշխատանքի բոլոր ձևերը։ Քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման թեմատիկայում ներառվել և հետևողականորեն լուսաբանվում են գաղափարախոսական պայքարի հարցերը, կանոնավոր կերպով անցկացվում են դասախոսական միջոցառումներ, պրոպագանդիստների համար կազմակերպվում են մեթոդական սեմինարներ, լայն ու բազմազան է հայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակության, երիտասարդության հետ տարվող աշխատանքի զինանոցը։ Ուշադրության է արժանի, օրինակ, աշխատողներին գաղափարախոսական պայքարի հրատապ հարցերին օպերատիվ կերպով տեղյակ դարձնելու՝ կուսկոմիտեի ստեղծած ծառայությունը։ Յուրաքանչյուր աշխատող կարող է օրվա ուզած պահին հատուկ արկղի մեջ գցել իրեն հուզող հարցը, հետո դրանք մշակվում, ընդհանրացվում են և հաշվի առնվում հերթական պրոպագանդիստական միջոցառման կամ քաղուսուցման ընթացքում։ Անհրաժեշտության դեպքում հրավիրվում են որակյալ դասախոսներ։

Միավորումում կազմակերպական ու դաստիարակչական մեծ աշխատանք է տարվում արտադրանքի որակը հետևողականորեն բարձրացնելու նպատակով։ Ձեռնարկությունը ակտիվորեն մասնակցում է հանրապետական ու միութենական սիմպոզիումներին և խորհրդակցություններին, գործարար կապեր է պահպանում արտասահմանյան երկրների մի շարք ձեռնարկությունների հետ։

Գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն տեղամասերից մեկը հակապրոպագանդան է։ Գործի հաջողությունն այստեղ, ինչպես և գաղափարախոսական աշխատանքի ամեն մի այլ ոլորտում, պայմանավորված է նախ և առաջ կադրերի ճիշտ ընտրությամբ, նրանց տեսական-քաղաքական մակար-



դակով և, ոչ պակաս չափով, հակապրոպագանդա վարելու նրանց պատրաստականության, հրատապ պրոբլեմներին իրազեկ լինելու աստիճանով։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հակասովետական պրոպագանդայի էությանը գաղափարախոսական ակտիվը տեղեկանում է հիմնականում թերթերի, հասարակական-քաղաքական ամսագրերի, հեռուստատեսության միջոցով, մի բան, որը պատրաստականության, իրազեկության հնարավորությունների առումով նրանց դնում է ունկնդիրների հետ նույն պայմաններում։ Դրությունը շտկելու նպատակով արագացվել են տեղեկատու մեթոդական ձեռնարկների մշակումն ու հրատարակումը, կուսակցական կոմիտեներին հանձնարարվել է գաղափարախոսական և կուսակցական ակտիվին օգնելու համար տարեկան պատրաստել 1—2 մեթոդական հանձնարարական, կուսակցական, տնտեսական ու գաղափարախոսական ակտիվի դպրոցներում մտցվել է հատուկ կուրս, քաղաքային ու շրջանային կոմիտեների կուսկաբինետներում ստեղծվել են թեմատիկ կատալոգներ, տվյալ թեմատիկայի վերաբերյալ նյութերի քարտարաններ ու գրականության մատենագիտություն։ Որոշում է ընդունվել «Հակապրոպագանդայի հրատապ պրոբլեմները» գիտամեթոդական աշխատանքների ժողովածու հրատարակելու մասին։ Ինչ վերաբերում է գաղափարախոսական պայքարի հրատապ հարցերին ու միջազգային պրոբլեմներին օպերատիվ կերպով տեղեկացնելու խնդրին, ապա այդ գործում, չնայած ձեռնարկված միջոցներին, որոշակի վրիպումներ կան, և կուսակցական կոմիտեները պետք է լրջորեն մտահոգվեն գաղափարախոսական կադրերին հիշյալ ոլորտների վերաբերյալ անհրաժեշտ նյութեր տրամադրելու ամբողջական ու արդյունավետ համակարգ ստեղծելու հարցով։

Ելնելով հասարակական կարծիքի ուսումնասիրության ընթացքում ստացված տվյալներից՝ կուսակցական կոմիտեները ուժեղացրել են մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության հակապրոպագանդիստական ուղղվածությունը, բարձրացրել բուրժուական պրոպագանդայի հակասովետական ակցիաների մերկացման օպերատիվությունը։ Ընդ որում վերջին ժամանակներս կիրառվում է աշխատանքի այնպիսի ձև, ինչպիսին արտասահմանյան ինֆորմացիայի միջոցների հաղորդումների վերլուծումն է անմիջականորեն աշխատանքային կոլեկտիվներում։ Մեծ ուշադրություն է նվիրվում այն պրոպագանդիստական թեմաներին, որոնց օգնությամբ հակառակորդը փորձում է հանրապետության ազգաբնակչության մոտ բորբոքել նացիոնալիստական տրամադրություններ, անվստահություն սերմանել տնտեսական ու սոցիալական ոլորտներում, միջազգային ասպարեզում կուսակցության և կառավարության քաղաքականության հանդեպ։

Աշխատանքային կոլեկտիվներում անցկացվող նման ինֆորմացիոն վերլուծական միջոցառումների արդյունավետությունը ակնհայտ է։ Հակապրոպագանդիստական մեծ հաջողությամբ այդպիսի միջոցառումներ են անցկացվել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման աշխատանքային կոլեկտիվներում։

Թշնամական ազդեցությունը դիմակայելու ամենաակտիվ ու հարձակողական ձևերից մեկը սովետական ապրելակերպի պրոպագանդան է։ Կոլեկտիվիզմի, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի բարձր ոգի, քաղաքական ու սոցիալական ակտիվություն, քաղաքացիական պատասխանատվություն, հասարակական վարքագծի ու կենցաղի կուլտուրա՝ ահա այն հատկանիշները, որ բնորոշ են սովետական մարդուն, կազմում են նրա ապրելակերպի անբաժանելի տարրերը։

Սովետական ապրելակերպի պրոպագանդան կարևոր է ինչպես ներքին, այնպես էլ արտաքին լսարանի համար։ Իրականացնելով այդ աշխատանքը ներքին լսարանում, այսինքն՝ աշխատավորական կոլեկտիվներում, կուսակցական կազմակերպությունները ձգտում են, մի կողմից, բարձրացնել իրենց դաստիարակչական ջանքերի ներգործունությունը, մյուս կողմից՝ ավելի սերտորեն դրանք շաղկապել սոցիալական բնույթի խնդիրների, աշխատավորների հոգևոր ու նյութական պահանջմունքների հետ։

Բազմազան ու հետաքրքրական են «Հայէլեկտրամեքենա» միավորման կուսակցական կոմիտեի և սկզբնական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ձևերը։ Այստեղ ակտիվ քաղաքական-մասսայական աշխատանք են տանում 975 պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ ու ագիտատորներ։ Հատկանշական է միավորման ղեկավարների լայն մասնակցությունը դաստիարակչական աշխատանքին։ Դրա վկայությունն է և այն, որ գլխավոր դիրեկտոր Պ. Մանվելյանին շնորհվել է հանրապետության կուլտուրայի վաստակավոր աշխատողի կոչում, ավտոմատացման բաժնի պետ Վ. Ներսիսյանը պարգևատրվել է ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով, իսկ գլխավոր մետալուրգ Է. Սաֆարյանը՝ Լենինյան պատվոգրով։

Միավորումում լուծվում են խոշորամասշտաբ սոցիալական խնդիրներ։ Միայն կենցաղային ծառայության գծով այստեղ գործում են 16 օբյեկտներ, լուծված են աշխատանքի ու հանգստի կազմակերպման հետ կապված շատ հարցեր։ Ահա քառասուն տարուց ավելի է, ինչ Վ. Ի. Լենինի անունը կրող այս ձեռնարկությունը պրոպագանդում է սոցիալիզմի հիմնարար արժեքները, այդ թվում և այն լավագույնը, որ կուտակվել է իր աշխատանքային կոլեկտիվներում։ Ձեռնարկությունը, որը 40 տարի առաջ դարձավ Արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապերի հայկական ընկերության առաջին կոլեկտիվ անդամներից մեկը, ունի բազմաթիվ աշխատողներ, որոնք իրենց հասարակական եռանդը նվիրաբերում են ինտերնացիոնալ կապերի զարգացմանը։

Հայտնի է, որ կուսակցությունը մեծ կարևորություն է տալիս դաստիարակչական աշխատանքում վետերանների մասնակցությանը։ Նրանց հեղինակավոր կենսափորձի արդյունավետ օգտագործումը էական դեր է խաղում երիտասարդության հետ տարվող քաղաքական աշխատանքում, նախորդ սերունդների հեղափոխական, մարտական ու աշխատանքային լավագույն ավանդույթների ոգով նրան դաստիարակելու գործում։ 1984 թվականի սկզբներին հանրապետության մեծահասակ բնակչության շրջանում անցկացված հետազոտությունը ցույց տվեց, որ նրա ճնշող մեծամասնությունը իր փորձն ու գիտելիքները ակտիվորեն ներդնում է դաստիարակության պրոցեսում, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման գործում։ Դրա հետ մեկտեղ, հարցման ենթարկվածների շուրջ 35 տոկոսը դժգոհություն էր հայտնել հասարակական կյանքում իրենց ուժերն ու հնարավորությունները ոչ արդյունավետ օգտագործելու առթիվ, փոքր չէր և նրանց թիվը, ովքեր դժգոհել էին մեր հասարակական ու տնտեսական կյանքում եղած թերություններից։ Հետազոտությունները ցույց տվեցին նաև, որ անբավարար է տնային տնտեսուհիների շրջանում տարվող աշխատանքը։ Հարցերի այս շրջանակի ընդհանուր վերլուծությունը ի հայտ բերեց նաև մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության (բավարար չափով հաշվի չեն առնվում մեծահասակների ինֆորմացիոն պահանջները), դասախոսական պրոպագանդայի (սակավ են միջոցառումներ անցկացվում ըստ բնակավայրի) նեղ տեղերը։

Հաշվի առնելով այս ամենը և ելնելով գործերի իրական վիճակից, կուսակցական կոմիտեները, մասսայական ինֆորմացիայի միջոցները ակտիվացրին բնակչության մեծահասակ խմբերի հետ տարվող աշխատանքը, այն դարձրին ավելի բազմազան։ Բարձրացավ ժողովրդական դեպուտատների սովետների դերը նրանց հանգստի ու կենցաղի կազմակերպման գործում։

Աշխատանքի ու պատերազմի վետերանների ուժերը գաղափարաքաղաքական դաստիարակության մեջ լավագույն ձևով օգտագործելու ուշագրավ նախաձեռնությամբ հանդես եկավ Կիրովականի կուսքաղկոմը. նա որոշեց վետերաններին հանել ըստ բնակության վայրի կուսհաշվառումից և փոխադրել իրենց նախկին հիմնարկ-ձեռնարկությունների կուսկազմակերպություններ՝ հանձնարարելով նրանց գաղափարախոսական աշխատանքի որոշակի տեղամասեր։ Դրա հետ մեկտեղ, քաղկոմը առավել փորձառու վետերաններից շատերին, իրենց իսկ համաձայնությամբ, թողեց ըստ բնակության վայրի հաշվառման մեջ՝ նրանց վրա դնելով տվյալ շրջանի մեծահասակ բնակչու-



թյան մեջ տարվող քաղաքական աշխատանքի ուժեղացմանն աջակցելու պատասխանատու խնդիրը։

Հասարակական կարծիքի հարցման արդյունքների հիման վրա կոորդինացվեց հանրապետության հասարակագիտական գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի կուսկոմիտեների ջանքերը գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում։

Մենք ապրում ենք այնպիսի ժամանակներում, երբ երկու հակադիր աշխարհայացքների, երկու գաղափարախոսությունների հակամարտությունը աննախադեպ սուր բնույթ է ընդունել։ Պայքար է գնում մարդկանց սրտերի ու մտքերի համար։ Եվ մարդկության ապագան մեծապես պայմանավորված է այդ պայքարի ելքից։ Կապիտալիզմի ջատագովները միջոցների միջև խտրություն չեն դնում կյանքի իրենց նորմերն ու ստանդարտները մեզ պարտադրելու, բուրժուական աշխարհի սովորույթներն ու բարքերը մեզանում պատվաստելու համար։ Բուրժուական ստահոդ պրոպագանդային հակազդելու ամենահուսալի միջոցը մեր իդեալների, սոցիալիստական ապրելակերպի նորմերի հաստատումն է, սովետական մարդուն բնորոշ այնպիսի հատկանիշների դաստիարակումը, ինչպիսիք են քաղաքական զգոնությունը, դասակարգային անհանդուրժողությունը, իմպերիալիստական պրոպագանդայի մեքենայությունների նկատմամբ կայուն անընկալունությունը, այսինքն՝ այն ամենը, ինչը կազմում է պրոպագանդիստական, իսկ ավելի լայն առումով՝ գաղափարախոսական ամբողջ աշխատանքի միջուկը։

Մեր երկիրը թևակոխել է սոցիալ-տնտեսական զարգացման նոր փուլ։ Նոր պահանջներ են ներկայացվում մեր ողջ գաղափարախոսական գործունեությանը։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ քայլել ժամանակին համընթաց, գաղափարախոսական ողջ գործունեությունը բարձրացնել նոր պահանջների մակարդակին։

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

**Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր
**Ռ. ՍԱՐԳՍՅԱՆ**

Մեր երկրի էկոնոմիկայի զարգացման արդի փուլը
բնութագրվում է կառավարման ամբողջ տնտեսական
մեխանիզմի կոմպլեքսային կատարելագործմամբ՝ ներառյալ կազմակերպա-
կան կառուցվածքը, պլանավորումը, տնտեսական լծակներն ու խթանները:
Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումում, այժմ գոր-
ծող մեխանիզմի մասնակի փոփոխությունները, առանձին մանրամասների
կարգավորումները քիչ են, հարկավոր են խոշոր կոմպլեքսային միջոցառում-
ներ: Այսպիսին է տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը վերաբերող
հասունացած պրոբլեմի բնույթը:
Պրոբլեմի էությունն այն է, որ համաժողովրդական շահեր արտահայտող
պլանային առաջադրանքների ներկայիս մեխանիզմի և կիրառվող տնտեսա-
կան լծակների համակարգի միջև համաձայնություն չկա: Այդ լծակները եր-
բեմն չեն կապվում պլանի նպատակների հետ, այդ պատճառով էլ մի շարք
դեպքերում գործում են դրանց դեմ, որի հետևանքով շեշտը դրվում է վարչա-
կան հարկադրման, կենտրոնում հնարավորին չափ շատ տնտեսական որոշում-
ներ ընդունելու վրա, որը և հանգեցնում է կառավարման ճկունության
կորստի:
Այսպիսով, խոսքը վերաբերում է տնտեսական լծակների համակարգի
վերակառուցմանը, հասարակական, կոլեկտիվ և անձնական շահերի համա-
ձայնեցման գործուն միջոցի վերածմանը: Նման վերակառուցումը մեծապես
կանխորոշվում է այն խնդիրների բնույթով, որոնք նախատեսվում է լուծել:
Դրանցից կարելի է առանձնացնել. առաջինը՝ գիտատեխնիկական առաջադի-
մության արագացումը: Սովետական Միության կոմունիստական կուսակցու-
թյան ծրագրի նոր խմբագրության նախագծում որոշակիորեն գրված է՝ «Կու-
սակցության տնտեսական ստրատեգիայի հիմնական հարցը գիտատեխնիկա-
կան առաջադիմության արմատական արագացումն է»: Հազիվ թե հարկ կա
խոսրանալ դրա նշանակությունն ու բովանդակությունը մանրամասնորեն բա-
ցատրելու մեջ: Միայն արժե նշել, որ այդ խնդիրը չի հանգում այն բանին,
որպեսզի ընտրվեն լավագույն, առավել արդյունավետ նախագծերն ու միջո-
ցառումները: Անհրաժեշտ է նաև ստեղծել այնպիսի կազմակերպական և տըն-
տեսական պայմաններ, որոնց ժամանակ այդ նախագծերը իրականացվեին
մասսայական մասշտաբով և սեղմ ժամկետներում, քանի դրանք չեն դադարել
լավագույնը լինելուց: Այստեղ արդեն առկա է գիտատեխնիկական առաջադի-
մության արագացման փոխադարձ սերտ կապը տնտեսական մեխանիզմի
կատարելագործման հետ:
Երկրորդ խնդիրը աշխատանքային ակտիվության բարձրացումն է: Աշ-
խատաժամանակի կորուստները դեռ ամեն ինչ չեն: Քիչ է, ասենք, ժամը



9-ից մինչև 18-ը լինել աշխատատեղում: Կարևորը կատարողական կարգա-
պահությունն է, արտադրության նկատմամբ ստացած վերաբերմունքը,
ստեղծագործական նախաձեռնությունը, ձեռներեցությունը: Այստեղ անհրա-
ժեշտ է մշակել աշխատանքի խթանման այնպիսի համակարգ, որն ակտիվաց-
ներ աշխատանքային գործունեության ողջ կոմպլեքսը:
Այսպիսով, գիտատեխնիկական առաջադիմության արագացման հետ ան-
խզելիորեն կապված է երկրի տնտեսական և սոցիալական զարգացման կա-
րևոր պրոբլեմների լուծումը: Վերջին շրջանում ավելի հստակորեն է սկսել
դրսևորվել գիտատեխնիկական առաջադիմության և տնտեսական գործունեու-
թյան ոճի ու մեթոդների փոփոխությունների միջև գոյություն ունեցող փոխա-
դարձ կապը:
Տեխնիկական պրոգրեսը հանգեցնում է տնտեսական մարմիններին ժա-
մանակակից հաշվողական միջոցներով, հատուկ կառավարչական սարքավո-
րումներով զինելուն: Միաժամանակ գիտատեխնիկական առաջադիմության
ազդեցության ներքո փոխվում են ձեռնարկությունները, միավորումներն ու
ճյուղերը կառավարելու արտադրական և կազմակերպական կառուցվածքները,
ներդրվում են նոր, առաջավոր տեխնոլոգիաներ ու արտադրական սարքավո-
րումներ: Բնական է, այդ բոլոր փոփոխությունները տնտեսավարման գործող
մեխանիզմի պայմաններում հաճախ չեն կարող պրակտիկայում իրականացվել:
Մյուս կողմից, տնտեսական մեխանիզմի կատարելագործումը կապված է
խթանող աշխատանքային ֆունկցիաների հետ, որոնք ազդում են գիտատեխնի-
կական մշակումների արագացման և դրանք արտադրության մեջ ներդնելու
վրա: Ուստի տնտեսավարման մեխանիզմի բարելավումն իր հերթին նպաս-
տում է գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը: Հատկապես այդ
կապն ընդգծված է «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—
1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմ-
նական ուղղությունների» նախագծում՝ «Կոմպլեքսայնորեն զարգացնել կա-
ռավարման ու տնտեսավարման համակարգը, որը կոչված է ապահովելու
պլանավորման, տնտեսական լծակների ու խթանների, կառավարման կազմա-
կերպական կառուցվածքի օրգանական միասնությունն ու արդյունավետ փոխ-
գործակցությունը: Այդ համակարգը նպատակամղել արտադրության զարգաց-
ման ինտենսիվ գործոնների օգտագործմանը վճռականորեն անցնելուն, գի-
տատեխնիկական առաջադիմության արագացմանը, հասարակական պահանջ-
մունքների առավել լրիվ բավարարմանը»:
Մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման այդ
առանձնահատկությունը պետք է անպայմանորեն հաշվի առնել և օգտագոր-
ծել պրակտիկ գործունեության մեջ:
Այդ նպատակով, նախ և առաջ, հարկ է ճշտել և բնութագրել գիտատեխ-
նիկական առաջադիմության արագացմամբ պայմանավորված տնտեսավար-
ման մեխանիզմի փոխկապակցված զարգացման կարևորագույն ուղղություն-
ները: Անհրաժեշտ է ժողովրդական տնտեսության ճյուղերում տնտեսավար-
ման մեխանիզմի կատարելագործման ուղղությամբ իրականացված միջոցա-
ռումների փորձն ընդհանրացնել, իմաստավորել այդ բնագավառում հիմնական
հասկացությունների ապարատը:
Սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում, արտադրողական ուժերի ու
արտադրական հարաբերությունների զարգացմանը համապատասխան, կատա-
րելագործվել ու հարստացել են տնտեսավարման ձևերն ու մեթոդները: Տըն-
տեսական մեխանիզմի կատարելագործման պրոբլեմն առանձնահատուկ հրա-
տապություն ստացավ 70—80-ական թվականներին՝ գիտատեխնիկական
առաջադիմության նկատելի արագացման պայմաններում:
Սոցիալիստական հասարակության տնտեսական մեխանիզմն արտացո-
լում է սոցիալիզմի օրենքների գործողության օբյեկտիվ հիմքը և միախմբված
արտադրողների սուբյեկտիվ գործունեությունը: Այդ պատճառով, երբ խոսվում
է տնտեսական մեխանիզմի պրոցեսի, զարգացման ցիկլի մասին, նկատի է
առնվում դրա միայն երկրորդ կողմը, «սուբյեկտիվ գործունեությունը»: Այս
իմաստով տնտեսական մեխանիզմը հանդես է գալիս որպես կառավարման

կազմակերպումը կատարելագործելու ժամանակ։ Անշուշտ, խոսքը չի վերաբերում պարտադիր կարգով միայն մեծ չափերի կառուցվածքների ստեղծմանը։ Ճյուղային առանձնահատկությունը հաշվի առնելուց բացի անհրաժեշտ է բարելավել միավորումների կառավարման կազմակերպական կառուցվածքները, որոնք, տարբերվելով արտադրության մասշտաբներով, պետք է օրգանապես միասնական լինեն տեխնոլոգիայի, մասնագիտացման տեսակետից։ Միայն այս դեպքում կզուգակցվեն միավորումների գիտատեխնիկական և տնտեսական զարգացման շահերը։

Միավորումների տնտեսական մեխանիզմի վրա գիտատեխնիկական առաջադիմության արագացման ազդեցության մյուս տարբերիչ գիծը աշխատանքի խթանման համակարգն անընդհատ կատարելագործելն է։ Տեխնիկական զարգացումը մեծ մասամբ հանգեցնում է աշխատանքի զինվածության աճի և, վերջինիս հետևանքով, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդ պայմաններում աշխատանքի խթանիչ ֆունկցիաները արտադրական պրոցեսների առանձնահատկությունների հետ կապակցելու հրամայական անհրաժեշտություն է ծագում։ Այլ կերպ ասած, աշխատանքի որակի խթանման կազմակերպումը պահանջում է համակարգային մոտեցում։ Օրինակ, այդպիսին է բանվորների թողարկած արտադրանքն ըստ վերջնական արտադրանքի կամ վերջնական օպերացիայի հաշվարկման անցնելը։

Ներկայումս արտադրության տարբեր օղակների խթանման համակարգի պրակտիկ կազմակերպման մեջ առկա են մի շարք թերություններ, որոնց մի մասն ընդհանուր բնույթի է։ Այսպես, գործնականում հաճախ արտադրանքի որակի գնահատման ու խթանման ցուցանիշները իրենցից ներկայացնում են ոչ թե համակարգ, այլ տնտեսական երևույթների էության մեջ առանց խորը ներթափանցելու ընտրված խթանների որոշ կազմ։ Ընդ որում գործունեության ավելի պակաս էական պահերը հաճախ ընկնում են ավելի արտոնյալ, օգտավետ վիճակի մեջ, քան առավել էականները, նրանք, որոնցից իրոք կախված են արտադրության վերջնական արդյունքները։ Նման երևույթի ակնհայտ օրինակ են ծառայում «ֆիզիկական տոննա» ցուցանիշի օգտագործումը՝ մթերող և այլ արտադրամասերում արտադրության ծավալներն ու աշխատանքի արտադրողականությունը գնահատելու համար կամ էլ կաղապարողների վարձատրությունը ոչ թե ձուլվածքի, այլ պիտանի կաղապարների համար։

Դժվար չէ նկատել, որ գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայմաններում տնտեսավարման մեխանիզմի զարգացումը արտադրական միավորումների և ձեռնարկությունների մակարդակով շատ բանով կապված է կենտրոնացված ու ապակենտրոնացված կառավարման ռացիոնալ զուգակցման պրոբլեմների հաջող լուծման հետ։ Հարցի լուծումը, անշուշտ, բարդ է, և միավորման բազմակողմանի արտադրատնտեսական գործունեության նկատմամբ պահանջվում է կոմպլեքսային մոտեցում։ Մասնավորապես, մեր կարծիքով, այդ խնդիրը կարելի է լուծել օպերատիվ տնտեսական գործունեությունից ստրատեգիական կառավարման ֆունկցիաները առանձնացնելու հարցի հետ։ Այստեղ յուրաքանչյուր տեղական որոշում, ըստ երևույթին, իրավական չէ, քանի որ հենց ստրատեգիական կառավարման կենտրոնացումն ու օպերատիվ տնտեսավարման համեմատաբար ինքնուրույն ապակենտրոնացումը կարող են ապահովել լավագույն վերջնական արդյունքը։ Դրա համոզիչ վկայությունն է Երևանի «Էլեկտրասարք», «Ալմաստ», «Մասիս» արտադրական միավորումներում և այլուր կուտակված փորձը։ Այսպես, միավորումներում «մեկուսացած ցիկլի» գաղափարի վրա հիմնված նոր կազմակերպական կառուցվածքի ներդրումը թույլ է տվել կառավարման ստրատեգիական ասպեկտները էապես կենտրոնացնել գլխավոր դիրեկտորի մակարդակի վրա։ Միևնույն ժամանակ, Երևանի մոդելային կոշիկի ֆաբրիկայում նոր արտադրական կառուցվածքի ներդրումը, որը վերացրել է արտադրամասային կառուցվածքը և մասնագիտացված մի քանի ավարտուն ցիկլերի վրա հիմնված արտադրությունները, թույլ է տվել զգալիորեն բարելավել արտադրության օպերատիվ կառավարումը՝ ապահովելով արտադրանքի որակի բարձրացումը։ Այսպիսով, տնտեսական կառավարման համակարգի հետագա կատարելա-



գործման այդ ուղին, տեխնիկայի ու արտադրության կազմակերպման առաջադիմության առումով, հեռանկարային է, բայց դրա իրականացումը ևս կապված է մի շարք մեթոդաբանական սկզբունքների ճշգրտման անհրաժեշտության հետ։ Բանն այն է, որ արտադրության կառավարման համակարգերի մշակման շուրջ տակավին առկա են տարաձայնություններ, որոնց հիմքում ընկած է նյութական խթանման և դիրեկտիվային մեթոդների զուգակցման հարցը։ Մեր կարծիքով, այն հասարակությունում, որի էկոնոմիկան կառավարվում է կենտրոնացված կերպով, անշուշտ, որոշիչ տեղը միշտ կենտրոնացված մեթոդներինն է, որոնց բացակայության դեպքում պետական պլանային կառավարումն անիմաստ է։ Այդ մեթոդները, որոնք թույլ են տալիս արագ ու արդյունավետ կերպով հասնել ծրագրված նպատակներին, արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականության ուղղակի ծնունդն ու դրսևորման ձևն են։

Եթե նյութական խթանման մեթոդներն արտահայտում են անձնական ու կոլեկտիվ նյութական շահերը և արտադրության վրա ներգործում են գլխավորապես բաշխման համակարգի միջոցով, ապա կենտրոնացված մեթոդները, հանդիսանալով արտադրության վրա ուղղակիորեն ներգործելու միջոց, ելնում են աշխատավորների հասարակական տնտեսական շահերից, որոնք վճռորոշ են։

Մեր կարծիքով, կենտրոնացված տնտեսական կառավարման բոլոր միջոցները պետք է գործեն փոխկապակցված, և դրանց առանձնացումը կարող է կատարվել միայն պայմանականորեն։

Այսպիսով, սոցիալիստական արտադրական ձեռնարկությունների ու միավորումների պլանային տնտեսական կառավարման համակարգը տնտեսական պրոցեսների կարգավորման տարբեր, օրգանապես չփոխկապակցված գործելաձևերի և մեթոդների կոնգլոմերատ չէ։ Ընդհակառակը, դա դիալեկտիկորեն փոխպայմանավորված և օրգանապես փոխկապակցված տարրերի համակարգ է՝ կառուցված ֆունկցիաների բաժանման ու մասնագիտացման սկզբունքով։ Նրանում կենտրոնացված և ապակենտրոնացված նյութական խթանման մեթոդները կատարում են իրենց յուրահատուկ ֆունկցիաները։

Ուստի տնտեսավարման այս կամ այն մեթոդների դեմ առարկությունը չի կարելի դիտարկել մեկուսացված, այլ այն տեսանկյունով, թե որևէ մեթոդի անտեսման կամ անբավարար օգտագործման դեպքում ինչպես կգործի տնտեսության համակարգը՝ ամբողջությամբ վերցրած։

Սակայն, որքան էլ կատարյալ լինեն կենտրոնացված կառավարման միջոցները, որքան էլ լայնորեն կիրառվի հաշվողական տեխնիկան, միշտ էլ կմնա հարցերի որոշակի շրջանակ, որը չի կարող բավականաչափ լրիվ կերպով քննարկվել ու լուծվել կենտրոնում։ Արտադրության հսկայական մասշտաբները նկատի ունենալով՝ հարկ է լինում կենտրոնացված տնտեսական կառավարման ոլորտը սահմանափակել միայն այն բնագավառներով, որոնք կառավարման տվյալ տեխնիկայի դեպքում ենթարկվում են արդյունավետ վերահսկողության, և որոնցում կենտրոնը կարող է ավելի լրիվ հաշվի առնել հասարակական շահերը, քան ձեռնարկությունները։ Այլ դեպքերում, ժողովրդատնտեսական նպատակներին հասնելու համար, պետությունը ձեռնարկությունների կոլեկտիվներին շահագրգռում է ինքնուրույն այնպիսի որոշումներ ընդունելու հարցում, որոնք օգտավետ են հասարակությանը։ Այլ կերպ ասած, նյութական խթանման մեթոդները օգնության են գալիս կենտրոնացված տնտեսավարմանը։ Այստեղ հարկ է նշել նաև այն պարագան, որ, ելնելով նշված իսկ կապից, տնտեսական մեխանիզմի արդյունավետությունը շատ բանով պայմանավորված է նյութական խթանման համակարգերի կատարելությամբ և պլանավորման գործող համակարգի հետ դրանց կապով։ Այսպես, մասնավորապես, երկար ժամանակ որպես այլընտրանք առաջարկվում էր խթանման այն համակարգը, որը հենվում էր ոչ թե պլանային առաջադրանքների կատարման ցուցանիշների, այլ անցած ժամանակաշրջանի համեմատությամբ դրանց փաստական բարելավման, ավելի ճիշտ՝ թողարկվող արտադրանքի ծավալի աճի և շահույթի գումարի իրացման ու շահութաբերության մակար-

մոտ 600-ով, սակայն առանձին տնտեսությունների հոտում դրանց տեսակա-բար կշիռը դեռևս 30—31 տոկոսից չի անցնում։

Գյուղի աշխատողների առջև լուրջ խնդիրներ են դրվում տասներկուերորդ հնգամյակում։ Նախատեսվում է նախորդ հնգամյակի համեմատությամբ ըն-թացիկ հնգամյակում հացահատիկի արտադրությունն ավելացնել 5,5 տոկոսով, բանջարեղենինը՝ 10, պտղինը՝ 13, մսինը՝ 16,9, կաթինը՝ 6,5 տոկոսով։

Կուսշրջկոմը միջոցներ է ձեռնարկում ետ մնացող տնտեսություններն առաջավորներին հասցնելու, նրանց ցուցանիշների միջև եղած տարբերու-թյունները վերացնելու համար։ Առաջին հերթին շեշտը դրվում է մարդկային գործոնի բարձրացման վրա, որպեսզի յուրաքանչյուր տնտեսության ղեկավար, միջին օղակի հրամանատար, գյուղատնտեսության մասնագետ իրեն հանձնա-րված աշխատանքը կատարի բարեխղճորեն, ուժերի լրիվ նվիրումով։ Գործի են դրվում կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութական ու բարոյական խրախուսման բոլոր լծակները, բարձրացվում նրանց անձնական պատասխանատվությունն ու շահագրգռությունը պլանային առաջադրանքների կատարման գործում։ Շրջանի պարենային ծրագրով նախատեսվում է տաս-ներկուերորդ հնգամյակում հանրային հոտում կովերի գլխաքանակը հասցնել 40 տոկոսի։ Բոլոր տնտեսություններում առանձնացվել են բարձր կաթնատու կովերից ստացված էգ մատղաշները և հատուկ խնամք է տարվում դրանց նկատմամբ։ Այդ խմբերը խնամում են բարեխիղճ անասնապահներ։ Խնդիր է դրված կազմակերպել երկու տարեկանից բարձր էգ մատղաշի ինտենսիվ աճե-ցումը այն հաշվով որ յուրաքանչյուր տարի կովերի գլխաքանակի 25—30 տոկոսի չափով երինջներ անցնեն մայրական կազմը։ Մեր հաշվարկներով տասներկուերորդ հնգամյակում սեփական հոտի վերարտադրության միջոցով բարձր մթերատու կովերից ստացված էգ մատղաշի հաշվին ամեն տարի կո-վերի շարքը կփոխադրվեն 1.000—1.200 գլուխ երինջներ։ Մեկ կովի կաթնա-տվությունը կկազմի 2.500—2.600 կգ։

Շրջանի հեռանկարային զարգացման համար կենսական նշանակություն ունի Գետիկի ջրամբարի արագ կառուցումը։ Շինարարական աշխատանքներն արդեն սկսվել են։ Ջրամբարում կուտակվելու է 35—40 մլն խմ ջուր։ Դրա կործարկումից հետո ոռոգելի կդառնա շուրջ 4.000 հեկտար վարելահող։ Այս հանգամանքը մեզ հնարավորություն կընձեռի ոռոգման նորմալ ջրով ապա-հովել ինչպես տեխնիկական կուլտուրաների, այնպես էլ հացահատիկի, խո-տաբույսերի ցանքատարածությունները, բանջարեղենը և այգիները։ Ոռոգման ջրի լրիվ ապահովվածության պայմաններում հացահատիկի միջին բերքատվու-թյունը կարելի է հասցնել 35—40 ցենտների, շաքարի ճակնդեղինը՝ 350—400, բանջարեղենինը՝ 250—300, պտղինը՝ 10—15 տոննայի։ Սակայն նախատես-ված պլանի համաձայն Գետիկի ջրամբարի կառուցումը պետք է ավարտվի 1990 թվականին, իսկ ոռոգման ցանցի շինարարությունը՝ ավելի ուշ։ Այդ իսկ պատճառով շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները հարց են բարձրացրել հանրապետության կառավարության առջև՝ շրջանի մի շարք ջրասակավ գյուղերում (Հարթագյուղ, Ջրաշեն, Ծաղկաբեր, Սարամեջ) կառուցելու տեղական նշանակության ջրամբարներ։ Դրանց գործարկմամբ հնարավոր կլինի լրիվ ոռոգել շաքարի ճակնդեղի, բանջարեղենի ցանքադաշ-տերը։

Շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպություն-ները կձեռնարկեն բոլոր հնարավոր միջոցները ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել գործերով դիմավորելու, նոր հնգամյակի մեկնարկային տարին հաջողությամբ սկսելու համար։ Աշխատավորական կոլեկտիվները պայքարում են ավելի բարձր ընագծեր նվաճելու համար։

---

# ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ԶԳԱՑՈՒՄՈՎ

**Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Կ. Ս. Ստանիսլավսկու անվան ռուսական դրամատիկական թատրոնի գլխավոր ռեժիսոր, ՀՍՍՀ ժողովրդական արտիստ, հանրապետության պետական մրցանակի դափնեկիր

ԵՐԵՎԱՆԻ ԹԱՏՐՈՆՆԵՐԻ ՀԱՄԱՍՏԵՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ իր պատվավոր տեղն ունի Կ. Ս. Ստանիսլավսկու անվան ռուսական դրամատիկականը։ Մոտ հիսուն տարի առաջ հիմնադրված թատ-րոնը միշտ էլ եղել է ռուսական սովետական, դասական, համաշխարհային և, իհարկե, հայկական դասական ու ժամանակակից դրամատուրգիայի ակտիվ պրոպագանդիստը։ Տարեցտարի ընդլայնվում է նրա ստեղծագործական աշ-խատանքի ոլորտը, ավելի ու ավելի խոր ու հետաքրքիր է դառնում հաղոր-դակցումը հանդիսատեսի հետ։ Մեր լավագույն ներկայացումները բավական բարձր գնահատականի են արժանացել համամիութենական խաղապարեզում։

Թատրոնի կոլեկտիվը շատ լավ գիտե, թե որքան պատասխանատու բան է ներկայացնել ռուս թատերական արվեստը՝ Հայաստանի հինավուրց մշա-կույթի, նրա հոգևոր գանձերի և թատերական խոր ավանդույթների առկայու-թյան պայմաններում։ Մյուս կողմից, բազմիցս հյուրախաղերի մեկնելով Մոսկվա, Լենինգրադ, Բաքու, Թբիլիսի, Խարկով, Դոնեցկ, Լվով, Ռիգա և այլուր, մենք ներկայացնում ենք Հայաստանի թատերական արվեստը՝ խո-րապես համակված նրա բարձր հեղինակությունը չաղարտելու ցանկությամբ։ Կարող եմ ասել, որ մեր թատրոնի ողջ կոլեկտիվն ապրում ու գործում է ստեղծարար լարված աշխատանքով, մեզ մոտ հետևողականորեն հաստատ-վում է բարենպաստ մթնոլորտ։ Մեր լավագույն ներկայացումները մրցանակ-ների են արժանանում հանրապետական և համամիութենական փառատոնե-րում, որտեղ հատկապես բարձր է գնահատվում ռեժիսորական ու դերասա-նական աշխատանքը (Ա. Դուդարևի «Շեմը», Կ. Չապեկի «Մակրոպուլոսի դե-ղամիջոցը», Հ. Լալայանցի «Արիության բարձունքը», Բ. Բրեխտի «Կուրաժ մայրիկը և նրա երեխաները»)։ Ստեղծագործական երիտասարդության հետ տարվող աշխատանքի համամիութենական ստուգատեսում (1983—1984 թթ.) թատրոնն արժանացավ երրորդ կարգի դիպլոմի, իսկ նկարիչ Ե. Սարգսյանը և դերասանուհի Է. Գրիգորյանը ներկայացման լավագույն ձևավորման ու դերա-սանական խաղի համար հանրապետական ստուգատեսում արժանացան առա-ջին մրցանակի։ Երկրորդ մրցանակը շնորհվեց դերասաններ Ն. Գոլիկին և Ի. Լարչենկոյին։

Հետաքրքրական ու բովանդակալից են նաև կապերը սոցիալիստական երկրների թատերական կոլեկտիվների հետ։ Բարեկամության ու համագոր-ծակցության պայմանագիր կնքելով Ռումինիայի Կրայովա քաղաքի ազգային թատրոնի հետ՝ մենք մշտապես հետաքրքրական ինֆորմացիա ենք փոխա-նակում, կազմակերպում պատվիրակությունների փոխայցելություններ։ Երև-անցիները լավ են հիշում ռումինական երկու առաջատար դերասանների՝ Կ. Սասուի և Լ. Պինցի հյուրախաղերը մեր «Ամբիոն» ներկայացման մեջ։ Ռումին հանդիսատեսները ևս իրենց հերթին ջերմորեն ընդունեցին մեր թատ-րոնի դերասանների՝ ՀՍՍՀ ժողովրդական արտիստուհի Յու. Կոլեսնիչենկոյի և արտիստ Վ. Գրիշինի հյուրախաղերը։

տաքբքրությունների, սիրված կերպարների ու հուզող մտքերի իր շրջանակը: Եվ շատ կարևոր է, որ ստեղծագործական այդպիսի ծրագիրը կարողանա ընդգրկել, արտացոլել ժամանակակից հասարակության զարգացման բարդ պրոցեսները: Ելնելով դրանից՝ մենք գիտակցաբար ընտրել ենք Ա. Գելմանի «Զինուլյա» բանավիճային պիեսը, ինչպես նաև դրամատուրգ Մ. Զամանյանի «Վարդաձորյան իրարանցումը» ինքնատիպ կատակերգությունը, դրանցից յուրաքանչյուրը յուրովի և տարբեր ժանրերով պատմում է մեր կյանքի տընտեսական ու հոգեբանական պրոցեսների մասին: Սուր բախումնային իրադրության մեջ երիտասարդ բանվորուհի Զինուլյան (այդպես են կոչում նրան բարեկամներն ու ընկերները) ցույց է տալիս ազնիվ, անզիջում պայքարի օրինակ, հանդես բերում հետևողական սկզբունքայնություն և բարձր արժանապատվություն: Եվ ներկայացումն ընկալվում է որպես հրապարակախոսական պայքար՝ հանուն ժամանակակցի հոգեբանական վերակառուցման:

Երկար տարիներ խաղացանկում չի եղել սովետական գյուղին, աշխատավորներին, նրանց հոգսերին ու ուրախություններին նվիրված պիես: Եվ ահա մեր ազդագրերում երևաց Ա. Դուդարևի «Երեկո» դրամատիկական պիեսը, ուր իրենց վարպետ խաղով աչքի ընկան դերասաններ Վ. Ռուդովիչը, Ն. Եգորովան և Ի. Գրիկուրովը: Ցավոք, որոշ հանգամանքների բերումով ներկայացումը պատշաճ ընդունելություն չգտավ: Մեր կոլեկտիվը ջանքեր է գործադրում բեմականացնելու Մ. Զամանյանի «Վարդաձորյան իրարանցում» պիեսը՝ օգտագործելով կենսուրախ երաժշտությունը, հայկական երգն ու պարը: Կատակերգությունն արծարծում է գյուղաբնակների արտահոսքի հարցերը: Ներկայացման պրեմիերան որոշել ենք կազմակերպել Հայաստանի գյուղերից մեկում՝ նպատակ ունենալով անմիջականորեն ստուգել դրա ներգործությունը հանդիսատեսի վրա:

Մեր խաղացանկային գործունեության ոլորտում էական տեղ է գրավում ռուս դասական պիեսների բեմադրության խնդիրը: Երկու տարի առաջ ներկայացված՝ Ա. Օստրովսկու «Անտառը», որ այնպես սակավադեպ է բեմադրվում, ամենևին էլ չի կարող լցնել այդ ասպարեզի բացը, որն առավել ակներև է դառնում այն պարագայում, երբ համամիութենական բեմում այնպես լայնորեն ներկայացվում են ռուս դասական դրամատուրգիայի գոհարները: Եվ ոչ մի օբյեկտիվ պատճառ չի կարող արդարացնել այսպիսի «ստեղծագործական թմբիրը»: Մեղքն այստեղ թատրոնի գեղարվեստական ղեկավարությանն է, որ չի կարողացել պլանաչափորեն կազմակերպել ռուս դասականների բեմադրման գործը մեր թատրոնում: Անշուշտ, ոչ բոլոր ռեժիսորները կամ դերասանները կարող են դասական երկերում շփման եզրեր գտնել արդիականության հետ, որը և հանդիսարահ կբերեր հետաքրքրասեր հանդիսատեսներին: Ավելի վատ է, երբ դասական երկը բեմադրվում է գորշ ու ձանձրալի, իբրև իր դարն ապրած հեղինակի գործ:

Գեղարվեստական խորհուրդը և կուսբյուրոն լրջորեն քննարկել են այդ հարցը և կազմել ռուս դասական գրական ստեղծագործությունների բեմադրման հեռանկարային պլան: Մեր խաղացանկում ընդգրկված՝ Ա. Պիսեմսկու «Դառը ճակատագիր», Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն» պիեսներում արծարծված բարոյաէթիկական հարցադրումները շատ առումներով արձագանքում են մեր հանդիսատեսի հույզերին:

Թատրոնը զգալի աշխատանք է ծավալել ու ծավալում է հայ ժամանակակից դրամատուրգիայի պրոպագանդման ասպարեզում: Ա. Արաքսմանյանի, Զ. Խալափյանի, Ա. Պապայանի, Ժ. Հարությունյանի ստեղծագործական կենսագրությունները մեծապես կապված են մեր թատրոնի գործունեության հետ: Ստանիսլավսկու անվան թատրոնի շնորհիվ են համամիութենական ու միջազգային բեմահարթակներ բարձրացել Զ. Խալափյանի «Օրորոցայինն» ու «Տարբեր նվագները», Ժ. Հարությունյանի «Խաչմերուկը», Ա. Պապայանի «Արտասահմանյան փեսացուն», Պ. Զեյթունցյանի «Աստվածներ և մարդիկ», Ա. Արաքսմանյանի «Արիստոտելի վերջին բոպեները» պիեսները: Սակայն այսքանը քիչ է: Հայկական դրամատուրգիան իր արժանի տեղը պետք է գրավի երկրի թատրոնների բեմերում՝ չպարփակվելով նեղ ազգային հետաքրքրու-



թյուններում, ամենից առաջ ներկայացնելով մեր հանրապետության հասա-
րակական կյանքի հոգեկան ու բարոյական զարգացման արդի պրոցեսները,
նրա մարդկանց հարուստ կերպարները:
Հայկական ինքնատիպ, հանդիսատեսի աճող պահանջներին համապա-
տասխան պիեսներ ունենալու նպատակին են ուղղված և մեր փոխհարաբե-
րությունները հեղինակների հետ: Ձնայած վերջին տարիներս երևան են
եկել Վ. Պետրոսյանի, Ժ. Հարությունյանի, Պ. Զեյթունցյանի դրամատիկական
արժեքավոր գործերը, հայկական թատրոններն ու մեր գործընկեր-ռեժիսորնե-
րը ժամանակակից լավ պիեսի սուր կարիք ունեն: Թատրոնի համար շատ կա-
րևոր է, որ հայ դրամատուրգիայի՝ ժամանակակից թեմայով գրված պիեսնե-
րում երկրի սոցիալ-քաղաքական կյանքի ընդհանուր օրինաչափություններն
արտացոլվեն ազգային հողի վրա: Ստեղծագործության կարևորագույն
հատկանիշը ո՛չ միայն արտացոլվածի լայն ընդգրկումն է, այլև, ամենից
առաջ, արտացոլման խորությունն ու ուժը:
Վերջին տարիներս հանրապետության սոցիալ-քաղաքական ակտիվ մըթ-
նոլորտը, սոցիալիստական բարոյականության և հասարակական բարձր գի-
տակցականության համար մղվող պայքարն ավելի ու ավելի են համակում
Հայաստանի աշխատավորներին: Եվ մենք՝ արվեստագետներս, և առաջին
հերթին՝ գրականության մշակները, պարտավոր ենք այդ արտացոլել մեր
ստեղծագործություններում: Չկարողանալ դա անել, նշանակում է չկատարել
քաղաքացիական ու պրոֆեսիոնալ պարտքը:
Ժամանակակից հայ մարդը ազգային բնորոշ հատկանիշների հետ մեկ-
տեղ իր մեջ խտացնում է նաև սովետական քաղաքացուն, ձևավորվող նոր
մարդուն բնորոշ գծերը: Բայց միաժամանակ կա ինչ-որ շատ կարևոր և ազ-
գային անկրկնելի մի բան, որ կազմում է նրա հոգևոր կերպարի էական հատ-
կանիշը: Ժամանակակից բնավորությունների այս արժեքավոր ու տիպական
հատկանիշների համադրումը պետք է լինի գեղարվեստական ստեղծագործու-
թյունների հետազոտության առարկան: Այլապես նույնիսկ վիրավորական է
կինոէկրանին կամ թատրոնի բեմում տեսնել մաղակալած ծերուկների, կո-
լացած պառավների, չածիլված, խիստ անհամակրելի երիտասարդների... Ան-
հրաժեշտ է կերտել մեր ժամանակակցի ամբողջական կերպարը՝ խելացի ու
պայքարող, հասարակության զարգացման, հաճախ հակասական, պրոցեսներն
ըմբռնող ու գնահատող մարդուն, որը լավ է հասկանում, թե որքան կարևոր
առաքելություն է իրեն բաժին ընկել ժամանակակից այս բարդ աշխարհում:
ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում (1985 թ.) ընկ. Մ. Ս. Գորբաչովն
ասաց. «Այն ամեն լավագույնը, ինչ ստեղծել են սովետական գրականությունն
ու արվեստը, միշտ անբաժանելի է եղել կուսակցության ու ժողովրդի գլխա-
վոր գործերից ու հոգսերից: Կասկածից վեր է, որ այսօր լուծվող նոր խնդիր-
ները արժանի արձագանք կգտնեն սոցիալիստական կյանքի արդարությունը
հաստատող գեղարվեստական ստեղծագործության մեջ»:
Թատերգությունն ու թատրոնը գրականության ու արվեստի այնպիսի
բնագավառ են, որ հնարավորություն են ընձեռում որոշակի ու պարզորեն ար-
ձագանքելու օրվա պրոբլեմներին, անկեղծ ու համարձակ բացահայտելու հա-
սարակության առաջընթացն արգելակող բացասական երևույթները, արտա-
ցոլելու մեր գործերի գեղեցկությունն ու վեհությունը, մեր հասարակարգի վսեմ
մարդասիրությունը, նրա մարդկայնությունն ու բարոյականությունը:
Արդի բարդ ժամանակներում կուսակցությունն ու ժողովուրդը արվեստի
ու գրականության գործիչներից պահանջում են անողոք պայքար ծավալել
ընդդեմ բյուրոկրատների, անբանների, պորտաբույծների, կաշառակերների ու
հարբեցողների... Բայց մենք պետք է ճանաչենք ու տեսնենք, գեղարվեստա-
կան միջոցներով ներկայացնենք նաև այն մարդկանց, ում ակտիվ պայքարն
ու վեհ իդեալները մեր կյանքը դարձնում են պայծառ ու գեղեցիկ:
Անշուշտ, արդի իրականության հենց այսպիսի արտացոլումը կարելի է
համարել ժամանակակից պոետական ռեալիզմ, մի բան, որի իրականացմանը
և ձգտում է մասնակից լինել մեր թատրոնը: Սակայն դրա համար անհրաժեշտ
են թատերասեր հասարակայնության առջևից ընթացող ռեժիսոր, դերասան-քա-

ղաքացի, գաղափարախոս, քաղաքագետ՝ ունակ ստեղծագործական այնպիսի ուժով խարազանելու հինը, բացահայտելու և պաշտպանելու նորը, որ հանդիսականները կարողանան բարոյական պատշաճ դասեր քաղել ներկայացումից։ Մեզ մոտ ինչ-որ ոչ ճիշտ բան կա հենց ռեժիսորական ու դերասանական աշխատանքի կազմակերպման մեջ. ասես թե ռեժիսորը կամ դերասանը ճիշտ չեն պատկերացնում իրենց աշխատանքի, իրենց մասնագիտության նկատմամբ ունեցած պարտականությունների շրջանակները։ «Հոգևոր ուժերի առավելագույն ծախսման» (Կ. Ս. Ստանիսլավսկի) փոխարեն պիեսի և դերի վրա աշխատանքը երբեմն հասցվում է նվազագույնի։ Եթե մենք վճռականորեն, ամենայն խորությամբ ու կտրականապես մեր առջև չդնենք մասնագիտական խնդիրների հարցը, ապա ետ կմնանք և գաղափարապես։

Պատասխանատվությունը արվեստագետի համար նշանակում է նաև առավելագույն ինքնակարգապահություն։ Ստեղծագործական պրոցեսի ապահովման համար այն նույնքան անհրաժեշտ է, որքան և ամեն մի այլ ոլորտում։ Այդ պրոցեսի հետ պարզապես անհարիր են անկարգապահությունը և անկազմակերպվածությունը։ Կուսակցությունը վճռական պայքար է ծավալում այնպիսի մի չարիքի դեմ, ինչպիսին է հարբեցողությունը, «անմեղ» կերուխումը՝ միաժամանակ պայքարելով նաև հարբեցողների նկատմամբ հանդուրժողական վերաբերմունքի դեմ։ Ինչ խոսք, այդ պրոբլեմը մեր քաղաքում այնքան էլ սուր չէ, բայց որքան էլ մենք պարծենանք, թե մեզ մոտ սթափարաններ չկան, ինքներս լավ գիտենք, թե որքան շնորհալի ստեղծագործող մարդիկ անհոգությամբ իրենց տաղանդն ու շնորհքը կործանում են ալկոհոլի պատճառով։ Դիրեկցիայի, կուսկազմակերպության, հասարակական կազմակերպությունների ջանքերով մեր թատրոնում այժմ ամենայն սրությամբ է դրված այդ հարցը, և դա արդեն տալիս է իր արդյունքները։

Թատրոնի գործունեության արմատական խնդիրներից է ստեղծագործական կայուն կազմի ձևավորումը, այն ինքնատիպ դերասանական անհատականություններով համալրելը։ Այդ հույժ բարդ, լուրջ, տևական աշխատանքն արդի պայմաններում ունի մի շարք առանձնահատկություններ։ Դերասանական կադրերի հոսունությունը (զանազան պատճառներով մեր թատրոնից գնում են երկրի տարբեր քաղաքներ) խիստ անդրադառնում է նրա գործունեության վրա։ Անշուշտ, գաղտնիք չէ, որ այնքան էլ հեշտ չէ առաջատար դերասանին կամ դերասանուհուն փոխարինել, միշտ չէ, որ կարելի է տարիներ շարունակ կոլեկտիվի գեղագիտական և ստեղծագործական որոշակի ծրագրով դաստիարակված մարդկանց փոխարինել նոր, թեկուզ և մասնագիտորեն հմուտ ու բանիմաց դերասաններով։

Դեռևս մի քանի տարի առաջ մենք կարող էինք պարծենալ մեր կոլեկտիվի կայունությամբ. մոսկովյան հաշվետու հյուրախաղերի ժամանակ միահամուռ նշվեց ո՛չ միայն Երևանի ռուսական թատրոնի «հետաքրքրական և ինքնատիպ ռեժիսուրան», այլև բարձր գնահատվեց այնտեղ աճեցված մի շարք դերասանների բարձր պրոֆեսիոնալիզմը։ Մոսկովյան և լենինգրադյան ռեժիսորներին դուր եկավ մեր առաջատար դերասանների՝ ՀՍՍՀ ժողովրդական արտիստ Գ. Կորոտկովի, ՀՍՍՀ վաստակավոր արտիստուհի Վ. Բաբիչևայի, արտիստներ Ա. Բուլատովի, Յու. Ռիչկովի, Լ. Բուտենինի, Լ. Նովիկովայի, Ռ. Պապայանի խաղը։ Բայց նրանք տարբեր պատճառներով հեռացան թատրոնից, և դա թանկ նստեց մեզ վրա։

Թատրոնին հարկ եղավ վերակառուցել խաղացանկը, փոփոխել հեռանկարային ստեղծագործական պլանները, համարժեք ու հուսալի փոխարինողներ որոնել ծայրամասերում։ Գտնվեցին և ներքին ռեզերվներ, հատկապես երիտասարդների շրջանում։ ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության օգնությամբ տասը տարի առաջ ռուսական թատրոնին կից կազմակերպված ստուդիան արդեն երեք անգամ տվել է իր շրջանավարտները, որոնք այսօր ստեղծագործական կայուն դիրքեր ունեն, և ավելի ու ավելի հաստատուն է դառնում նրանց մասնագիտական մակարդակը, աճում ստեղծագործական ինքնահատույցը։ Իհարկե, նրանք չէին կարող լիովին փոխարինել մեր կոլեկտիվից հեռացած առաջատարներին, և միայն նրանց միջոցով թատրոնի համալրման



հարցը չի լուծվում։ Արդեն նշվեց, որ, գտնվելով առանձնահատուկ պայմաններում, առանց ընտրողական աշխատանքի, առանց երկրի այլ քաղաքներից վարպետ դերասաններ հրավիրելու՝ մենք չենք կարող ինչպես հարկն է կազմակերպել և առաջ տանել կոլեկտիվի գործունեությունը։

Ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում, կուսակցությունն այսօր առավել կոնկրետ ու հստակ է առաջադրում մեր աշխատանքային և ծառայողական ժամանակի խնայողական ու արդյունավետ օգտագործման, աշխատանքի նկատմամբ հոգեբանական վերաբերմունքի վերակառուցման, բարոյական նոր փոխհարաբերությունների հարցերը։ Եվ, պետք է խոստովանել, անելիքներն այս ասպարեզում անհատնում են։ Անհանդուրժելիորեն շատ ժամանակ է ծախսվում զանազան մանրուքների վրա, հաճախ զուր տեղը վատնվում են ստեղծագործական ոգեշնչումի թանկագին պահերը, որոնց վերականգնումն այնքան էլ դյուրին չէ։ Երբեմն տեսնում ես՝ տիտղոսների արժանացած դերասանը խաթարում է առողջ, կենդանի ստեղծագործական մթնոլորտը, փորձերի հետ կապված բանավեճերով պաշտպանում «համազգեստի պատիվը»։ Իսկ ինչի՞ են հանգեցնում առաջնայնության այդ մոլուցքը, ավելի համեստ դերերից հրաժարվելը, անպայման միայն գլխավոր դեր խաղալու անկասելի ցանկությունը... Անտարակույս, թատրոնը հավասարության տեղ չէ, դերասանների շրջանում պետք է լինեն իսկական հեղինակություններ և լիդերներ։ Միաժամանակ որքա՜ն կարևոր է նրանց դերը դերասանների հաջորդ սերնդի բարոյական ու մասնագիտական դաստիարակության, ընդհանուր ստեղծագործական խնդիրներն ու պահանջները հասկանալու գործում։ Այս առումով հույժ կարևոր են և անձնական համեստությունն ու քննադատական ինքնագնահատությունը։

Այսօր դժվար է մեր կոլեկտիվը պատկերացնել առանց ՀՍՍՀ ժողովրդական արտիստ Իվան Գրիկուրովի։ Եվ դա ոչ միայն այն պատճառով, որ նա լավ, հուսալի, վարպետ դերասան է, որը հիսուն տարի նվիրվել է հարազատ կոլեկտիվին։ Նրան հարգում ու սիրում են և խելացիության, անմիջականության, բարյացակամության ու համեստության համար։ Քսանամյա համատեղ աշխատանքի ընթացքում ես չեմ հիշում նրա կողմից ստեղծագործական կամ արտադրական կարգապահության խախտման որևէ դեպք, չեմ հիշում, որ նա հրաժարվի նույնիսկ փոքր դերից։ «Քեռի Վանյան» (սիրով այդպես են անվանում նրան թատրոնում) զերծ է ինքնագովությունից, շիտակ ու սկզբունքային է ինչպես երիտասարդության, այնպես էլ մեծերի հետ, իր նկատմամբ խստապահանջ է։ Ուստի և բարձր է նրա ստեղծագործական ու մարդկային հեղինակությունը։ Եվ իր ողջ հեղինակությամբ հանդերձ Իվան Գրիգորևիչը չի վախենում աշակերտ լինել, սովորել իր խաղընկերներից, ռեժիսորներից ու դերասաններից, երիտասարդներից։ Եվ այն ամենը, ինչ նա անում է, կրում է իր մասնագիտությամբ, իր թատրոնով, այսօրվա օրով հրապուրվածության, սիրահարվածության դրոշմը։ Նրանից արժե ընդօրինակել ոչ միայն դերասան, այլև մարդ լինելու արվեստը։

Մեր կուսակցությունը համակողմանիորեն նպաստում է գրականության ու արվեստի դերի բարձրացմանը։ Գրականությունն ու արվեստը կոչված են, կարդում ենք ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում, «...ծառայելու ժողովրդի շահերին, կոմունիզմի գործին, լինելու միլիոնավոր մարդկանց համար բերկրանքի ու ոգեշնչման աղբյուր, արտահայտելու նրանց կամքը, զգացումներն ու մտքերը, ակտիվորեն օգնելու նրանց գաղափարական հարստացմանն ու բարոյական դաստիարակությանը»։

Կ. Ս. Ստանիսլավսկու անվան ռուսական դրամատիկական թատրոնը իր ստեղծագործական ուժերի նվիրումով, օգտագործելով բոլոր հնարավորությունները, կիրականացնի կուսակցության առաջադրանքները, կնպաստի ռեալիստական թատերական արվեստի զարգացմանը։ Ինչպես մեր երկրի բոլոր աշխատավորները, մեր թատրոնի կոլեկտիվը ևս համակված է ՍՄԿԿ XXVII համագումարը արժանավայել դիմավորելու վճռականությամբ։

# ԸՆՏԱՆԻՔԻ ԵՎ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Վ. ՏՈՒՐՅԱՆ**
ՍՄԿԿ Կենտկոմին կից հասարակական
գիտությունների ակադեմիայի ասպիրանտ

«Ընտանիքը հետզհետե ավելի կարևոր դեր է խաղում մատաղ սերունդների առողջության ամրապնդման և դաստիարակության, հասարակության տնտեսական ու սոցիալական առաջադիմության ապահովման, ժողովրդագրական պրոցեսների բարելավման ասպարեզում: Այստեղ են ձևավորվում մարդու խառնվածքի հիմքերը, աշխատանքի, բարոյական, գաղափարական ու մշակութային առավել կարևորագույն արժեքների նկատմամբ նրա վերաբերմունքի հիմքերը: Հասարակությունը կենսականորեն շահագրգռված է ամուր, հոգեպես ու բարոյապես առողջ ընտանիքով»:

(Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի նախագծից)

ԸՆՏԱՆԻՔԸ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ *սկզբնական բջիջն է, նրա*
*սոցիալական կառուցվածքի հիմնական տարրերից մե-*
*կը։ Ներկայացնելով ամուսնու և կնոջ, ծնողների և երեխաների միջև եղած*
*հարաբերությունները՝ պատմական զարգացման ամեն մի փուլում այն իրա-*
*կանացնում է իր իսկ՝ մարդու արտադրության, ցեղի շարունակման հույժ կա-*
*րևոր ֆունկցիան։ Հանդիսանալով սոցիալական կայուն կազմավորում՝ ընտա-*
*նիքն արտացոլում է իր մեջ հասարակության բնույթը, դրանում եղած սոցիա-*
*լական հարաբերությունները և նյութական արտադրության մակարդակը,*
*կուլտուրան ու բարոյականությունը։ «Վերցրեք արտադրության զարգացման,*
*փոխանակության ու սպառման որոշակի աստիճան,— գրել է Կ. Մարքսը,— և*
*կստանաք որոշակի հասարակարգ, ընտանիքի, խավերի կամ դասակարգերի*
*որոշակի կազմավորում, մի խոսքով, որոշակի քաղաքացիական հասարակու-*
*թյուն» (տե՛ս* К. Маркс, Ф. Энгельс, т. 27, стр. 402)*։ Նշելով ընտանիքի*
*և հասարակության փոխադարձ կապը՝ մարքսիզմ-լենինիզմի դասականները*
*շեշտում էին, որ ընտանիքը «պետք է զարգանա այն չափով, ինչպես զարգա-*
*նում է հասարակությունը և փոփոխվի այն չափով, ինչպես փոխվում է հա-*
*սարակությունը, ճիշտ այնպես, ինչպես եղել է անցյալում» (*Архив Маркса
и Энгельса, т. 9, стр. 37)*։*

*Սոցիալիստական շինարարության տարիներին ընտանիքը հակամարտ*
*հակասություններից քայքայվող աշխարհից անցել է տնտեսական ու սոցիա-*
*լական հասարակության կենսագործունեության իրոք ներդաշնակ հիմքերի աշ-*
*խարհը։ Վերացվեցին տղամարդկանց և կանանց, ծնողների և երեխաների*
*միջև եղած անիրավահավասար հարաբերությունների տնտեսական, իրավա-*
*կան, սոցիալ-բարոյական պատճառները։ Նոր հարաբերությունների գոյավո-*
*րումը ընտանիքում ընթացել է անհավասարությունից՝ իրավահավասարության*
*միջոցով դեպի ընտանիքի բոլոր անդամների հավասարության դժվարին ու*
*երկար ճանապարհով։ «Սովետական իշխանությունն աշխարհում առաջինը և*
*միակը լրիվ ոչնչացրեց բոլոր հին, բուրժուական, ստոր օրենքները, որոնք*



*կնոջը դնում են տղամարդու հանդեպ անիրավահավասար դրության մեջ, արտոնություններ են տալիս տղամարդուն, օրինակ, ամուսնական իրավունքի բնագավառում կամ երեխաների նկատմամբ ունեցած հարաբերությունների բնագավառում։ Սովետական իշխանությունը՝ որպես աշխատավորների իշխանություն, աշխարհում առաջինը և միակն է, որ վերացրել է սեփականության հետ կապված բոլոր այն առավելությունները, որոնք ընտանեկան իրավունքում պահպանվել են տղամարդու համար բոլոր բուրժուական, նույնիսկ ամենադեմոկրատական հանրապետություններում»,— նշել է Վ. Ի. Լենինը (ԵԼԺ, հ. 40, էջ 183)։*

*Ընտանիքը դարձել է սոցիալիստական հասարակության ամենաբարձր արժույթներից մեկը։ Այն, ինչպես հռչակում է ՍՍՀՄ սահմանադրության 53-րդ հոդվածը, գտնվում է պետության պահպանության ներքո։ Ընտանիքի հիմնումը հույժ կարևոր սոցիալական խնդիր է։ Հենց դրանից են ելնում կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը՝ մշակելով և իրականացնելով ընտանիքի ամրապնդման միջոցառումներ։ Առկա ռեսուրսների պայմաններում ընտանիքի սոցիալ-տնտեսական պահանջմունքների առավել լրիվ բավարարման հոգածությամբ է տոգորված կուսակցության սոցիալական քաղաքականությունը։*

*Ենթարկվելով սոցիալիստական հասարակության զարգացման ընդհանուր օրինաչափություններին ու միտումներին՝ ընտանիքը նույնպես ունի իր բնորոշ առանձնահատկությունները։ Հանդիսանալով ամենաբազմակողմ կազմավորումներից մեկը, որ միավորում է իր մեջ կենսաբանական, տնտեսական, բարոյական, հոգեբանական, հասարակական ու գաղափարախոսական սկզբունքներ, այն դրսևորվում է նաև որպես անձնական և միջանձնական հարաբերությունների ինքնատիպ մտերմիկ միկրոաշխարհ, որն ունի իր զգացմունքային ավանդույթները, սովորություններն ու պահանջմունքները, այսինքն՝ հանդես է գալիս որպես սոցիալ-հոգեբանական ընդհանրություն։ Սրանում է հենց դրսևորվում ամեն մի ընտանիքի ինչպես նմանությունը, այնպես և անկրկնելիությունն ու տարբերությունը։*

*Ընտանեկան հարաբերությունների կատարելագործումը, ինչպես ամեն մի կենսական պրոցես, հարուցում է շատ դժվարություններ ու պրոբլեմներ։ Ձևավորվում է կառուցվածքային նոր ընտանեկան կացութաձև, տեղի է ունենում ընտանիքի դարավոր կենսափորձի և ընտանեկան նոր արժույթների վերաիմաստավորում։ Այս ամենը, ինչպես անմիջականորեն, նույնպես և միջնորդավորված ձևով էական փոփոխություններ է մտցնում ընտանիքի սոցիալական ֆունկցիաների մեջ։*

*Բավականին բարդ է ժամանակակից սովետական ընտանիքի ֆունկցիայի սիստեմավորումը։ Գիտնական-մասնագետները դեռևս որոշակի եզրակացության չեն հանգել ընտանիքի կենսագործունեության դասակարգման հարցերի շուրջ։ Այնուամենայնիվ, որքան էլ տարբեր լինեն մասնագետների կարծիքները, նրանք բոլորը համամիտ են, որ և՛ անցյալում, և՛ այժմ, և՛ ապագայում ընտանիքից անանջատելի են սոցիալական երեք գլխավոր դերեր։ Առաջին՝ ժողովրդագրական. ընտանիքը հասարակության գլխավոր ժողովրդագրական հիմքն է, միակ աղբյուրը մարդկային այն ուժերի, որոնցից կազմվում է հասարակությունը։ Երկրորդ՝ տնտեսական. ընտանիքում վերականգնվում են աշխատանքում վատնված ուժերը, և այն հանդիսանում է ողջ աշխատանքային պոտենցիալի գլխավոր հենարաններից մեկը։ Երրորդ՝ դաստիարակչական. ընտանիքում է դրվում մանուկ-անհատի անձնավորության հիմքը, աճում է մարդը։ Այն բանով՝ լավ թե վատ է արվում այդ, մեծապես պայմանավորված են հասարակական բոլոր հարաբերությունները, արտադրողական ուժերի ողջ վիճակը։*

*Երեխաների խնամքի, ծերերի սոցիալական ապահովության գործին հասարակության հետզհետե աճող մասնակցությունը ընտանիքը վեր է ածում իրավահավասար մարդկանց ազատ դաշինքի։ Մեծանում է ներընտանեկան հարաբերությունների դերը ընտանիքի կայունության ու հաստատունության ապահովման գործում։ Առաջին պլան են մղվում ընտանիքի՝ որպես սոցիա-*

Քննարկում ենք ՍՄԿԿ կենտկոմի

նախագծերը

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ

*ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ, ի թիվս բազմաթիվ տեսական պրոբլեմների, խթանում է նաև այն հարցի մշակումը, թե ինչպիսին պետք է լինի սոցիալ-տնտեսական զարգացման ինտենսիվացման փուլում հասարակական պրակտիկայի գիտական ապահովման ընդհանուր տիպը: Տվյալ հարցի դիտարկումն, ինքնին այժմեական լինելով հանդերձ, թույլ է տալիս երկրի էկոնոմիկան ինտենսիվ ուղու վրա դնելու խնդրին նայել հատուկ, դեռևս ոչ բավարար ուսումնասիրված տեսանկյունից:*

Պրոբլեմի էությունն այն է, որ եթե նախկինում գիտությունը կոչված էր կատարելագործելու, օպտիմալացնելու գլխավորապես հասարակական պրակտիկայի առանձին ոլորտների գործունեությունը, առանձին ճյուղերի և ձեռնարկությունների աշխատանքը, ապա առաջիկա փուլում, որ թևակոխում է երկիրը, պարզվում է, որ դա միանգամայն անբավարար է: Չէ որ այսօր պահանջվում է ինտենսիվացնել ողջ սոցիալական օրգանիզմի, և ոչ թե միայն նրա առանձին մասերի աշխատանքը: Սա է ՍՄԿԿ ծրագրի նախագծի առաջադրած խնդրի առանձնահատկությունն ու վիթխարիությունը: *Իսկ նրա լուծման համար անհրաժեշտ է դառնում հասարակության զարգացման օպտիմալ վիճակների, կապերի ու ստրատեգիաների մշտական որոնումը:* Մենք առաջարկում ենք արտացոլել ծրագրում առաջադրվող հարցի այդ առանձնահատկությունը, *որպեսզի կարելի լինի ավելի հստակորեն պատկերացնել նրա ողջ էությունն ու մասշտաբայնությունը:*

Մենք առաջարկում ենք նաև հատկապես արտացոլել ՍՄԿԿ ծրագրի՝ գիտության նկատմամբ այստեղից բխող սկզբունքորեն նոր պահանջը: Այն կայանում է նրանում, որ հասարակական զարգացման օպտիմալ ծրագրերի սահմանման հետ կապված, նշված սոցիալական պահանջմունքի բավարարումը գիտության կողմից ապահովելը մեր օրերում սկսում է ձեռք բերել նույնքան կարևոր նշանակություն, որքան և ամենօրյա անհատական և հասարակական կարիքների բավարարումը: *Եվ միաժամանակ օպտիմալ ծրագրերի սահմանումը դառնում է այդ կարիքների արդյունավետ բավարարման ամենակարևոր պայմաններից մեկը:* Տվյալ դեպքում մենք գործ ունենք արմատապես կարևոր ստրատեգիական խնդրի հետ, որը գիտությանն է առաջադրվում սոցիալ-տընտեսական զարգացման ինտենսիվացման նպատակադրությամբ: *Եվ այդ իսկ պատճառով, մեր կարծիքով, նրա հստակ ձևակերպումը պետք է արտացոլվի ՍՄԿԿ ծրագրում:*

Նպատակահարմար է ծրագրում արտացոլել նաև այն գործոնները, որոնք անմիջականորեն պայմանավորում են գիտական ջանքերի մոբիլիզացման և կենտրոնացման անհրաժեշտությունը՝ հասարակության զարգացման օպտիմալ վիճակների, կապերի ու ստրատեգիաների մշտական որոնումների ու սահմանման համար: Այդ թելադրվում է ամենից առաջ ինտենսիվ զարգացման բուն բնույթով, որը, ի տարբերություն էքստենսիվ զարգացման, կողմնորոշված է դեպի գործունեության տարբեր բնագավառների միջև եղած կապերի առավե-



լագույն օգտագործումը՝ որպես անի շատ կարևոր ներքին աղբյուր: *Հիմնական խնդիրը, որ երկիրը պետք է լուծի առաջիկայում, հենց այն է, որպեսզի նյութատեխնիկական առաջընթացի հեղափոխական արագացման հետ օրգանապես կապված կարողանար օգտագործել հասարակական պրոգրեսի նշված ներքին աղբյուրը, որն ունի հսկայական պոտենցիալ և գործնականում անսպառ է:*

Հասարակական զարգացման օպտիմալ ծրագրերի մշտական որոնման և հիմնավորման անհրաժեշտությունը թելադրվում է նաև այն պայմաններով, որոնց դեպքում մարդիկ հետզհետե ավելի շատ են կորուստ ունենում փորձերի ու սխալների մեթոդը կիրառելով: Դրանք այն պայմաններն են, որոնք առաջացել են գիտատեխնիկական առաջընթացի սրընթաց արագացման և նրանով պայմանավորված բնական միջավայրի ու բուն հասարակության վրա մարդկային ներազդման հզորության բազմակի ուժեղացման հետևանքով: *Դրանցով էլ մասնավորապես որոշվում է այն բացառիկ կարևոր նշանակությունը, որ մեր օրերում ձեռք են բերում գործունեության էկոլոգիապես փորձարկված չափանիշները:*

*Սոցիալիստական հասարակության գործառության և զարգացման գիտական որոնման և օպտիմալ տարբերակների սահմանման սուր սոցիալական պահանջմունք ծնող նշված գործոնները հնարավորություն են ընձեռում հասկանալու հասարակական պրակտիկայի գիտական ապահովման այն նոր ընդհանուր տիպի առանձնահատկությունը, որ պահանջվում է կուսակցության ծրագրային դիրքորոշման արդյունավետ իրականացման համար:* Գիտությունն առաջիկայում պետք է անցնի հասարակական պրակտիկայի առավելապես գերատեսչական օպտիմալացումից ընդհանուր համակարգային օպտիմալացման: Իսկ այդ խնդրի լուծումը հնարավոր կդառնա միայն այն պայմանով, որ գտնվեն գիտական առաջընթացի գերատեսչական չափանիշները ամբողջությամբ սոցիալիստական հասարակության գործառության և զարգացման պահանջմունքներն արտացոլող առավել ընդհանուր չափանիշներին ենթարկելու արդյունավետ մեխանիզմները: *Մենք կարծում ենք, որ երկրի՝ ինտենսիվացման կուրսով թելադրվող գիտական զարգացման ընդհանուր ստրատեգիայի նախնական ելակետներն առավել լիովին ու հստակ արտացոլելու նպատակով* գիտական առաջընթացի չափանիշների նշված ենթակարգությունը նույնպես հարկավոր է արտացոլել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության վերաբերյալ ենթաբաժնում:

*Արված առաջարկության նշանակությունը հասկանալի դարձնելու համար հարկ է հիշեցնել, թե այսօր երկրում որքան սուր է դրված միջգերատեսչական անջրպետների պրոբլեմը: Այդ անջրպետների գլխավոր պատճառներից մեկը էկոնոմիկայում և հասարակական կյանքի այլ ոլորտներում ինտենսիվ զարգացման նմանակներն են: Չէ որ միջգերատեսչական անջրպետներն այսօր այն գործոնն են, որ էապես արգելակում է սոցիալիստական հասարակության պլանային հիմունքների առավելությունների լիարժեք դրսևորումը, ինչպես նաև նրանում ծնում բավականին նշանակալից կենտրոնախույս ուժեր: Սոցիալ-տնտեսական զարգացման ինտենսիվացման ծրագիրն էլ հենց նպատակամղված է այդ ուժերին տիրապետելուն և դրանք համաժողովրդական շահերին ենթարկելուն:*

Սակայն գիտությունը կարող է օգնել այդ արմատապես կարևոր պրոբլեմի լուծմանը միայն այն դեպքում, եթե ինքն իսկ տեղափոխվի ինտենսիվ զարգացման ուղի: *Նախորդ շրջանում մշակված գիտական զարգացման տիպը շատ բանով համապատասխանում էր տնտեսական զարգացման բնույթին: Մասնավորապես,* ինտենսիվացման պրոցեսները գիտության մեջ ևս զարգանում էին առավելապես առանձին, նրա ավելի ու ավելի մասնագիտացվող մարզերում: Իսկ նա ամբողջովին, որպես միասնական համակարգ, բնութագրվելով գիտությունների տարբեր խմբերի համեմատաբար թույլ կապերով ու կոոպերացիայով, զարգանում էր գլխավորապես էքստենսիվ կերպով: *Այսօր գիտությունների տարբեր ճյուղերի միջև եղած անջրպետները հաղթահարելը գիտական գործունեության ինտենսիվացման համար նույնքան կարևոր է,*

ինչպես և միջգերատեսչական անջրպետների հաղթահարումը տնտեսական գործունեության ինտենսիվացման համար։

Այս զուգադրությունը կարելի է շարունակել, ուշադրություն դարձնելով այն բանին, որ ինտենսիվացման ուղուն անցնելը պահանջում է լուրջ կառուցվածքային փոփոխություններ ոչ միայն էկոնոմիկայում, այլև գիտության մեջ։ Վերջինս նույնպես, ինչպես և ժողովրդական տնտեսությունը, պետք է ճկուն և ժամանակին հարմարվողական վերակառուցման ունակություն ձեռք բերի։ Չէ որ այնպես, ինչպես արդյունաբերությունում արտադրության ընդլայնման հիմնական միջոց է համարվում նոր շինարարությունը և ոչ թե եղած ձեռնարկությունների վերակառուցումը, գիտության մեջ ևս տիրապետում էր նոր գիտական ստորաբաժանումներ ստեղծելու միջոցով աճի մեթոդը, այլ ոչ թե նրանց ժամանակին վերակառուցումը։ Աճի այդ նմանակների դեպքում, որոնք պայմանավորված էին նեղ մասնագիտացված ծրագրերի առաջնությամբ, շատ գիտական կառուցվածքներ, ինչպես և արդյունաբերականները, ձեռք էին բերում մեծ իներցիականություն և կարծրացածություն։ Որպես հետևանք նրանք անկարող էին լինում պատշաճ կերպով արձագանքել սրընթաց աճող նոր՝ հատկապես միջճյուղային բնույթի, պրոբլեմներին։ Մինչդեռ նման արձագանքման ունակությունը պետք է դառնա նորմ սոցիալ-տնտեսական զարգացման պայմաններում։ Դա բավականին հստակորեն արտացոլված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի նախագծի գիտության վերաբերյալ ենթաբաժնում։ Այնտեղ գիտական հաստատությունների կառուցվածքի ճկունությունը, արդիական միջճյուղային պրոբլեմները լուծելու նրանց ունակությունը շեշտվում են ժամանակակից գիտության կարևոր հատկանիշների թվում։ Ընդ որում նշվում է, որ ժամանակակից պրոբլեմների բարդ կոմպլեքսային բնույթը պահանջում է հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների ինտեգրացման խորացում։ Այդ ցուցումները չափազանց կարևոր են, բայց մենք կարծում ենք, որ դրանք պահանջում են որոշակի կոնկրետացում և մի շարք ճշտումներ։

Նրանք վերաբերում են գիտության, ինչպես նաև կրթության, կազմակերպական կառուցվածքներին առավել մեծ ճկունություն հաղորդելու արդյունավետ ուղիներ ու միջոցներ փնտրելու խնդրին, որը վերն ասվածի համաձայն ձեռք է բերում բացառիկ նշանակություն։ Մենք առաջարկում ենք այդ նույն ենթաբաժնում մատնանշել, որ հասարակական պրակտիկայի ինտենսիվացման կուրսը ենթադրում է գիտության ու կրթության գոյություն ունեցող կառուցվածքը նորագույն գիտաինտեգրացումային պրոցեսներին համապատասխանեցնելու հետ կապված գործնական միջոցառումների կոմպլեքս ծրագրի մշակում։ Ընդ որում հարկ է հատուկ ուշադրություն դարձնել այն միջոցների համակարգին, որոնք կոչված են անհրաժեշտ ստատուս ապահովել գիտաինտեգրացումային պրոբլեմների համար, պլանավորել և խթանել նրանց մշակումը՝ գիտության կողմից համեմատաբար նեղ մասնագիտական պրոբլեմների ավանդական մշակումների հետ միասին։

Որն է այս առաջարկության իմաստը։ Այս հարցին պատասխանելու նպատակով հիշեցնենք այն իրադրությունը, որն ստեղծվել է հասարակական, բնական ու տեխնիկական գիտությունների սահմանագծերում գտնվող պրոբլեմների մշակման ոլորտում։ Չէ որ, չնայած տվյալ պրոբլեմների հսկայական նշանակության բավարար չափով գիտակցմանը, չնայած այն բանին, որ նրանց մշակման անհրաժեշտությունը նշված էր ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների որոշումներում, դրանք դեռևս գերազանցապես մշակվում են առանձին խանդավառ հետազոտողների կամ նրանց ոչ մեծ, տարերայնորեն ստեղծված խմբերի կողմից։ Ամենագլխավորն այն է, որ նրանց իրականացրած գիտաինտեգրացումային հետազոտությունները սովորաբար պատշաճ տեղ և ճանաչում չեն գտնում գիտության և բարձրագույն կրթության կազմակերպական կառուցվածքներում։ Իսկ դա տեղի է ունենում հենց այն պատճառով, որ տվյալ հետազոտություններում արծարծված պրոբլեմները դուրս են լինում այն ընդունված պլաններից ու ծրագրերից, որոնցով ղեկավարվում են գիտական հաստատություններն ու բուհերը։ Նման իրադրությունում դիտարկվող պրոբ-



լեմների մշակումը լավագույն դեպքում դառնում է մի ինչ-որ ֆակուլտատիվ բան, որով կարելի է և՛ զբաղվել, և՛ չզբաղվել։

Մինչդեռ շատ մեծ է գիտաինտեգրացումային ծրագրերի ներդրման նշանակությունը թեկուզ այն պատճառով, որ հենց դրանք են գիտության և կրթության ճկուն կառուցվածքների ստեղծման բանալին։ Դա պայմանավորված է նրանով, որ գիտական (և այլ ոլորտների) գործունեության ինտենսիվացման ամենակարևոր հատկանիշներից մեկը հանդիսացող կառուցվածքային ճկունությունը անհրաժեշտաբար ենթադրում է համապատասխան հաստատությունների միջև կոոպերացիայի և կապերի սերտացում։ Դրա հետևանքով գիտաինտեգրացումային պրոբլեմների մշակման խթանմանը և դրանց պլանավորմանը նպատակամղված միջոցառումների արդյունքը կլինի ոչ միայն նոր հաստատությունների ստեղծումը, այլև այնպիսի միջոցի լայնորեն, գործնական օգտագործումը, ինչպիսին են պրոբլեմային հետազոտությունների ժամանակավոր խմբերը։ Այդ միջոցառումների առավել մեծ հետևանքը կլինի այն, որ դրանք կհանգեցնեն այնպիսի պայմանների ստեղծմանը, որոնք անհրաժեշտ են գոյություն ունեցող գիտական հաստատությունների միջև բազմազան կապեր հաստատելու, ինչպես նաև պլանավորված ինտեգրացումային պրոբլեմների լուծման նպատակով նրանց որոշակի օղակների վերակառուցման համար։ Ուստի, դժվար թե սխալվենք, եթե ասելու լինենք, որ գիտությունների՝ որպես միասնական համակարգի, գործունեության ինտենսիվացման խնդիրը կարող է լուծվել միայն ամենազանազան մակարդակի գիտաինտեգրացումային ծրագրերի ստրատեգիապես մտածված բազմապլանային և պարբերական ներդրման շնորհիվ։

Ինտենսիվացման վերաբերյալ կուսակցության դիրքորոշման իրականացումը, լինելով հասարակական զարգացման լավագույն տարբերակներ մշտապես որոնելու և գտնելու անհրաժեշտություն, պահանջում է դուրս գալ այդ զարգացման և հեռանկարային պլանավորման պրոցեսների որակապես նոր սահմանագծեր։ Իսկ դա իր հերթին հանգեցնում է հասարակական գիտությունների դերի խիստ նշանակալից բարձրացման, պայմանավորելով նրանց չափազանց էական կիրառական գործառույթների մշակումը, որոնք անմիջականորեն կապված են զարգացման նշված լավագույն տարբերակների սահմանման հետ։ Հեռանկարում իրենց նշանակությամբ այդ գործառույթները միանգամայն կարելի է համադրել արդի բնագիտության կիրառական գործառույթների հետ։

Միանգամայն պատահական չէ, որ ՍՄԿԿ ծրագրի գիտության վերաբերյալ ենթաբաժնում հուսալի տնտեսական ու սոցիալական կանխատեսումների մշակումը դիտարկվում է որպես հասարակական գիտությունների անհետաձգելի խնդիրներից մեկը։ Մեր կարծիքով ծրագրի նախագծի այս կետը ևս կարիք ունի կոնկրետացման, որպեսզի այն անմիջականորեն կապակցվի սոցիալ-տնտեսական զարգացման ինտենսիվացման դիրքորոշման հետ։ Մենք առաջարկում ենք հատկապես շեշտել, ելնելով դրանից, հասարակական պրոցեսների սիստեմային-օպտիմալացման մոդելավորման պրակտիկայի կատարելագործման անհրաժեշտությունը։ Չէ որ հասարակության զարգացման օպտիմալ վիճակների, կապերի ու ստրատեգիաների սահմանումն այսօր հնարավոր է դառնում հենց մոդելավորման այդ տեսակի շնորհիվ։

Որպեսզի հասկանալի դառնա այդ մոդելավորման առանձնահատկությունը, նշենք, որ սոցիալական կանխատեսման սովորական ձևերի (զարգացման առավել հնարավոր միտումների կանխատեսումը) համար վերջնական արդյունքը մոդելավորումն իր համար դարձնում է ելակետային։ Մեկնելով այդ արդյունքից, մոդելավորման տվյալ տեսակը սիստեմային վերլուծման մեթոդները, ինչպես նաև ԷՀՄ-երը լայնորեն օգտագործելու միջոցով նմանակում է, հաշվարկում հետազոտվող զարգացման այլ հնարավոր տարբերակները՝ նրանցից լավագույնն ընտրելու նպատակով։

Մոդելավորման դիտարկվող տիպի հատուկ դերն ու էությունն այն է, որ այն փաստորեն հնարավորություն է ընձեռում տեղափոխելու փորձերի և սխալների մեթոդի օգտագործումը բուն հասարակական պրոցեսների մակար-

դակից նրանց մոտովի նմանակման մակարդակը: Դրանով իսկ այն ամենայն իրավունքով կարելի է որակել որպես հասարակական զարգացման մեջ տարերայնության տարրերը հաղթահարելու գործիք: Սակայն, հսկայական հնարավորություններ բացելով սոցիալական կառավարման պրակտիկայի առջև, սիստեմային-օպտիմալացման կանխատեսման մոդելավորումը միաժամանակ սկզբունքորեն նոր պահանջներ է ներկայացնում գիտության ամբողջության և ամենից առաջ հասարակության, որպես ամենաբարդ ինքնակազմակերպվող համակարգի, մասին գիտելիքներին:

Հենվելով հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների ինտեգրացման պրոցեսների վրա, այդ մոդելավորումը հանդես է գալիս որպես նախակարապետ հատուկ միջճյուղային գիտական կուլտուրայի, որը ձևավորվում է այսօր հասարակական պրակտիկայի նոր պահանջմունքների ազդեցության ներքո: Նրա նկատմամբ պահանջարկը ծնվում է սոցիալ-տնտեսական զարգացման ինտենսիվացման բուն խնդրից: Գիտության ճկուն կառուցվածքների ներդրումը և նրա հիմնական մարզերի ինտեգրացիայի պրոցեսների խթացումը, այսինքն՝ ՍՄԿԿ ծրագրի նախագծում առաջադրված խնդիրների լուծումն էլ թույլ կտա ստեղծելու նման գիտական կուլտուրայի հիմքը: Հավանաբար այդ պրոցեսների հետևանքով էլ ռեալ պայմաններ կստեղծվեն բնագիտության և մարդու մասին գիտության միասնությանը հասնելու համար, որը կանխատեսել է Կ. Մարքսը:

Հասարակական զարգացման արդի փուլի պահանջմունքները բավարարող, բարդ միջճյուղային պրոբլեմների լուծմանը կողմնորոշված գիտության ու կրթության ճկուն կառուցվածքների մշակման միջոցով գիտական զարգացման ինտենսիվացման պրոցեսը չի կարող իրականանալ տարերայնորեն: Մասնավորապես, նրա իրականացումը ենթադրում է համապատասխան գիտափորձերի անցկացում: Բայց, որպեսզի այդ գիտափորձերը համապատասխանեն ոչ թե գիտելիքի պարզապես առանձին մարզերի, այլ ամբողջապես գիտության ու կրթության ինտենսիվացման խնդրին, նրանք պետք է տարբերվեն առաջադրվող պրոբլեմների հատուկ կոմպլեքսայնությամբ: Մեր կարծիքով, այդ պահանջին լավագույնս համապատասխանում է ռեգիոնալ էկոլոգիանոոսֆերային գիտափորձերի անցկացման գաղափարը: Այդ գաղափարի էությունն է. կարողանալ բացահայտել համեմատաբար ոչ մեծ ռեգիոնալ «հրապարակներում» բնօգտագործման համակարգի կոմպլեքս օպտիմալացման այն հնարավորությունները, որ որպես պոտենցիալ ընկած են արդի գիտության ու տեխնիկայի հիմքում: Ձեռք բերված փորձը հետագայում կարող է օգտագործվել ամբողջ երկրի մասշտաբով: Տվյալ գաղափարը ծնվել է միայն վերջերս՝ որպես ՍՍՀՄ ԳԱ բիոսֆերայի պրոբլեմների գծով գիտական խորհրդի՝ Հայկական ՍՍՀ-ում բազմակողմանի էկոլոգիական հետազոտություններ անցկացնելու առաջարկի տրամաբանական շարունակություն:

Առանց խորամուխ լինելու մանրամասների մեջ, կուզենայինք այստեղ շեշտել միմիայն էկոլոգիանոոսֆերային գիտափորձերի գաղափարի նշանակությունը այն աննախադեպ կոմպլեքս խնդիրների իրականացման համար, որոնք ծառանում են երկրի առաջ՝ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի նախագծի համաձայն: Չէ որ ի տարբերություն սովորաբար անցկացվող սոցիալական գիտափորձերի, որոնցում առանձնացվում են հասարակական կյանքի առանձին կողմերը, տվյալ դեպքում բնօգտագործման տեսանկյունից պետք է ընդգրկվեն գործնականում նրա բոլոր ոլորտները: Սակայն այդ՝ իր բնույթով գիտաինտեգրացումային խնդրի հենց հատուկ բարդությունն ու կոմպլեքսայնությունն էլ թույլ է տալիս նրա լուծման ընթացքում դուրս գալ հասարակական պրակտիկայի ինտենսիվացման սկզբունքորեն նոր սահմանագծեր:

Էկոլոգիանոոսֆերային գիտափորձերի նախապատրաստելու և դրանց անցկացման պրոցեսները կարող էին դառնալ խիստ կարևոր փորձնական գոտիներ, հասարակական պրակտիկայի ինտենսիվացման դպրոցներ, որոնք մասնավորապես թույլ կտային մշակել և ներդնել անհրաժեշտ նոր օղակներ գիտության, կրթության, կառավարման մարմինների կառուցվածքներում, իրականացնել նրանց պահանջվող վերակառուցումը: Դիտարկվող գաղափարը,



լիովին համապատասխան լինելով կուսակցության ծրագրային դրույթներին, մեր կարծիքով, արժանի է ամենասևեռուն ուշադրության:

**Է. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի կուլտուրայի տեսության բաժնի վարիչ, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԴԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾՈՒՄ

**ՍՄԿԿ** ԾՐԱԳՐԻ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒՅԹԻ ՆԱԽԱԳԻԾԸ բովանդակում է սովետական հասարակության պլանաչափ և համակողմանի կատարելագործման, տնտեսական և սոցիալական արմատական վերափոխումների մի հոյակապ հեռանկար: Նախագծում մեծ ուշադրություն է դարձվում սոցիալական զարգացման բազմաբնույթ պրոբլեմներին: Մասնավորապես, ի տարբերություն ծրագրի 1961 թվականի տեքստի, ներկայիս տարբերակում նախատեսված է առանձին բաժին՝ «Կուսակցության սոցիալական քաղաքականությունը» (երկրորդ մասի երրորդ բաժինը): Բանը, անշուշտ, լոկ կառուցվածքային փոփոխությունները չեն: Կուսակցության սոցիալական քաղաքականությունը, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումից հետո, դարձել է շատ ավելի իրատեսական, ավելի գիտական: Ծրագրի նոր խմբագրույթի նախագծում քննադատաբար վերաիմաստավորվել են այն ձևակերպումները, որոնք չեն դիմացել ժամանակի քննությանը, այն ձերբազատվել է չհիմնավորված հարցադրումներից, ժամանակի վերազանցման միտումով պայմանավորված նպատակադրումներից, տնտեսական և սոցիալական հեռանկարային խնդիրների անհարկի մանրամասնեցումից:

ՍՄԿԿ-ի գործունեության ստրատեգիական նպատակադրումների ձևակերպումները, ընդհանուր առմամբ, նոր խմբագրույթի նախագծում բնորոշվում են գիտական խոր հիմնավորվածությամբ: Դրա հետ մեկտեղ, մեր կարծիքով, որոշ դրույթներ կարող են ավելի հստակ ձևակերպվել:

Ամենից առաջ, անհրաժեշտ է ծրագրում շեշտել այն հանգամանքը, որ տնտեսական զարգացումը, արդյունաբերական արտադրանքի աճը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և տեխնիկատնտեսական ցանկացած այլ խնդիր սոցիալիստական հասարակության համար ինքնանպատակ չեն, այլ, վերջին հաշվով, միջոց են բուն սոցիալական զարգացման խնդիրների լուծման համար: Սոցիալիստական հասարակությունը չի ձգտում մարդկանց նյութական բարեկեցության վերելքի հանուն սոսկ բարեկեցության, հանուն «սպառող հասարակության» բուրժուական որևէ մոդելի իրականացման: Անգամ նույնատիպ տնտեսական խնդիրների լուծումը սոցիալիզմի օրոք ունի սոցիալական այլ հնչեղություն, ավելի վեհ անձնային իմաստ: Սոցիալական նպատակների առաջնությունը տնտեսական նպատակների նկատմամբ, վերջիններիս ենթարկումը առաջինների կենսագործմանը սոցիալիստական հասարակության վճռական առավելություններից է կապիտալիստականի նկատմամբ: Անգամ ամենասուղ պայմաններում մեր հասարակությունը տեխնիկատնտեսական խնդիրները լուծելիս միշտ ձգտել է կարելույն չափ ելնել սոցիալական կարևորագույն նպատակից՝ աշխատավոր մարդու զարգացման շահերի ապահովումից: Տնտեսական խնդիրների սոցիալական նպատակաուղղվածությունը ավելի ցայտուն է դառնում սոցիալիստական հասարակարգի զարգացման, արտադրահարաբերությունների հասունացման, բուն սոցիալա-

կան զարգացման նպատակների կոնկրետ ձևակերպման համար նյութատեխնիկական հիմքի ամրապնդմանը զուգահեռ:

Ելնելով վերոհիշյալից, առաջարկում ենք «Կուսակցության սոցիալական քաղաքականությունը» վերնագրից հետո եկող տեքստը վերաշարադրել այսպես. «Կուսակցության սոցիալական քաղաքականությունը նպատակ է հետապնդում ապահովել սովետական հասարակության ներդաշնակ, համասարակշռված սոցիալական զարգացումը, կողմնորոշել այն դեպի ՍՍՀՄ-ի կոմունիստական հեռանկարի անշեղ կենսագործումը: Կուսակցությունը ելնում է այն բանից, որ հասարակության տնօրինության տակ եղած տնտեսական, տեխնիկական, կազմակերպական, մշակութային, քաղաքական հնարավորությունների ընդլայնմանը զուգահեռ սոցիալական զարգացման ստրատեգիական նպատակները աստիճանաբար ստանալու են է՛լ ավելի կոնկրետ ուրվագծեր և դրվելու են որպես անմիջաբար լուծելի խնդիրներ:

Կուսակցության սոցիալական քաղաքականության բոլոր նպատակադրումները հիմնվում են տնտեսական քաղաքականության, երկրի էկոնոմիկայի կուտակած տնտեսական պոտենցիալի վրա: Միևնույն ժամանակ կուսակցությունը ելնում է այն բանից, որ գնալով ուժեղանալու է սոցիալական քաղաքականության ներգործությունը էկոնոմիկայի աճի և արդյունավետության բարձրացման, հասարակության քաղաքական կայունության ամրապնդման, հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա»: Այնուհետև՝ ինչպես տեքստում, մինչև պարբերության ավարտը:

Հաջորդ պարբերությունը, որտեղ տրված են կուսակցության սոցիալական քաղաքականության չորս հիմնական խնդիրները, նույնպես շտկման կարիք ունի: Այսպես, այդ խնդիրներից մեկն է համարվում «հասարակական հարաբերությունների բոլոր հիմնական ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի ավելի ու ավելի լրիվ իրականացումը»: Սա մի փոքր անորոշ ձևակերպում է: Նախ, գոյություն չունի «սոցիալական արդարության սկզբունք» առհասարակ: Ձևակերպումը պիտի կոնկրետ լինի՝ «սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքները»:

Այստեղ մանրամասն պարզաբանման անհրաժեշտություն կա: Հիշեցնենք, որ Կ. Մարքսը Գոթայի ծրագրի քննադատության մեջ անդրադառնում է գերմանական բանվորական կուսակցության ծրագրի այն պահանջին, թե հարկավոր է հասարակական աշխատանքը կարգավորել աշխատանքային եկամտի «արդարացի բաշխման» միջոցով, նկատելով, որ այս կարգի հարցերում պետք է կողմնորոշվել ոչ թե արդարության ըմբռնումներով, մանավանդ որ զանազան սոցիալական խմբավորումներ ամենատարբեր պատկերացումներն ունեն այդ արդարացի բաշխման մասին: Հասարակական աշխատանքի ամբողջական արդյունքը, դրանից արվող անհրաժեշտ պահումները, յուրաքանչյուր աշխատողի եկամտի բաշխումը պետք է որոշվեն տնտեսական օրինաչափությունների հիման վրա, «բայց դրանք ոչ մի կերպ չեն կարող հաշվարկվել արդարացիության հիման վրա» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երեք հատորով, հ. 3, «Հայաստան» հրատ., 1978, էջ 13): Նույն բանն է մատնանշում նաև Ֆ. Էնգելսը, երբ քննարկում է անգլիական բանվորական շարժման ժամանակի լոզունգներից մեկը՝ «արդարացի աշխատավարձ արդարացի աշխատանքային օրվա դիմաց», պահանջելով ամենից առաջ գիտական, կոնկրետ պատմական մոտեցում (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 255):

«Սոցիալական արդարության» հասկացությունը բնորոշում է հասարակության (կամ որևէ այլ սոցիալական հանրության) ներսում բարիքների բաշխման տեսակը, ինչպես նաև փոխանակային հարաբերություններում (անհատի և հասարակության, անհատի և անհատի միջև և այլն) համարժեքության չափը: Ուստի կոնկրետ հասարակական համակարգը գնահատել սոցիալական արդարության դիրքերից, նշանակում է բացահայտել տվյալ հասարակարգին բնորոշ օբյեկտիվ փոխհարաբերությունը անհատի (կամ դասակարգի, ազգության ներկայացուցիչների, որևէ մասնագիտության տեր անձանց և այլն) հասարակական օգտակարության և իրական սոցիալական ստատուսի



միջև, ինչպես նաև իրավունքների և պարտականությունների միջև, ունեցած վաստակի և ստացած վարձատրության միջև, կատարած հանցանքի և պատժի միջև և այլն: Հենց այդ օբյեկտիվ փոխհարաբերությունն է, որ բարոյական գիտակցության մակարդակում արտացոլվում և արժեքավորվում է որպես պատշաճի և իրականի միջև համապատասխանություն կամ անհամապատասխանություն: Տվյալ հասարակարգը օբյեկտիվորեն, քաղաքական, բարոյական առումով այնքան ավելի արդար է, որքան որ ավելի է հիշյալ փոխհարաբերությունը համապատասխանում հասարակության առաջընթացին և անհատի զարգացման շահերին: Յուրաքանչյուր արտադրաեղանակ բնութագրվում է, այսպիսով, սոցիալական արդարության իր համակարգով, իր սկզբունքներով: Պատմությունը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր նոր, ավելի առաջադիմական հասարակական-տնտեսական ֆորմացիա իր հետ բերում է սոցիալական արդարության նոր սկզբունքներ և, իհարկե, արդարության ու անարդարության հարցերի նոր տեսական մեկնաբանություններ: Ահա թե ինչու, կրկնում ենք, հիշյալ ձևակերպման մեջ անպայման պետք է նշվի՝ «սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքները»:

Բացի այդ, նույն այդ ձևակերպման մեջ խոսք չի կարող լինել մեկ սկզբունքի մասին: Սոցիալիզմի օրոք կա գլխավոր սկզբունք (բաշխումը՝ ըստ աշխատանքի), կան և այլ, ոչ պակաս կարևոր սկզբունքներ՝ բոլորի հավասարությունը օրենքի առջև, իրավունքների և պարտականությունների միասնությունը, անձի արժանապատվության հարգումը՝ անկախ մարդկանց սոցիալական դրությունից և ազգային պատկանելությունից, անվճար կրթությունը, բուժսպասարկումը և այլն (տե՛ս Մ. Ս. Գորբաչով, Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը, «Հայաստան» հրատ., 1985, էջ 34—37):

Սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության այդ գլխավոր առանցքային սկզբունքը Վ. Ի. Լենինը ձևակերպել է պարզ ու կոնկրետ. «Ով չի աշխատում, նա թող չուտի»՝ ահա սոցիալիզմի գործնական պատվիրանը: Ահա թե ինչն է հարկավոր գործնականապես կանոնավորել» (ԵԼԺ, հ. 35, էջ 239): Նա, անկասկած, պատահաբար չի շեշտում երկու անգամ՝ «գործնական», «գործնականապես»: Աշխատող մարդու նկատմամբ հոգատարությունը, լավ աշխատողի շահեկան վիճակի ապահովումը պետք է իրականացվի գործնականում:

Այդ պատվիրանի տեսակետից սոցիալական արդարության անհարիր են անաշխատ եկամուտները: Դրանց բուն առկայությունը խորթ է մեր բարոյականությանը, այն հանգեցնում է լուրջ սոցիալ-հոգեբանական հետևանքների: Անաշխատ եկամուտների, պորտաբույծների, կաշառակերների դեմ տարվող հետևողական, անզիջում պայքարը ոչ միայն ինքնին սոցիալական արդարության պահանջի իրագործում է, սոցիալիզմի հիշյալ գործնական պատվիրանի իրականացում, այլ նաև ամրապնդում է աշխատանքի և աշխատավոր մարդու հասարակական հեղինակությունը, աճող սերունդների մոտ կայունացնում աշխատանքի նկատմամբ դրական դիրքորոշումը:

Մեր հասարակության սոցիալական հետագա զարգացման, մեր կարգերին բնորոշ սոցիալական արդարության ապահովման շահերը ներկայումս հրամայաբար պահանջում են առավել ուշադրություն դարձնել «ըստ աշխատանքի» բաշխման սկզբունքի անվերապահ, հետևողական կիրառությանը, ուստի և աշխատավարձի խթանիչ դերի, դրա սոցիալ-հոգեբանական, բարոյական ֆունկցիաների գործառնությանը: Չպետք է մոռանալ, որ սոցիալիստական հասարակարգում մարդու աշխատանքը ոչ միայն ապրուստի միջոց է, վաստակի եղանակ, այլև անձնավորության հասարակական արժեքավորության չափանիշ, սոցիալական վարկի հիմք: Աշխատավոր մարդը իրեն և այլոց, հատկապես իր կոլեկտիվի անդամներին գնահատում է ամենից առաջ ըստ աշխատանքային արժանիքների, հետևաբար մասամբ նաև ըստ վերջիններիս հասարակական ճանաչման որոշակի ձևի՝ ըստ աշխատավարձի: Ուստի բարձր աշխատավարձը աշխատավոր մարդու համար ոչ միայն բարեկեցությունը բարելավելու միջոց է, այլև ծառայում է որպես սեփական ես-ի ինքնագնահատականի, աշխատանքային, պրոֆեսիոնալ հպարտության հիմք: Աշխատա-

վարձը, աշխատած վարձը, իր կատարած աշխատանքի որակին ու քանակին համապատասխան վարձատրությունը, այսպիսով, աշխատանքի մարդու բարոյական գիտակցության կարևոր տարրերից են, իր գործունեության հասարակական արդարացի գնահատման մասին նրա առավել հիմնարար պատկերացումներից մեկը։ Պատահական չէ, որ, ինչպես ցույց են տալիս հետազոտությունները, մարդիկ հաճախ դժգոհություն են հայտնում աշխատավարձից ոչ այնքան դրա կոնկրետ չափի առումով, որքան հենց իրենց սոցիալական ստատուսի ցածր գնահատման, ուրեմն և՝ իրենց աշխատանքային արժանիքների ոչ պատշաճ գնահատականի գիտակցման հետևանքով։ Իսկ որքան ավելի ուժեղ պիտի լինի մարդկանց այն դժգոհությունը, որ բխում է սոցիալական արդարության սոցիալիստական սկզբունքների խախտման գիտակցումից։ Իրոք, դժվար չէ համոզվել, որ մարդիկ ամենից ավելի դժգոհում են ոչ թե իրենց ստացած աշխատավարձի բուն չափից, որքան այն իրողությունից, որ մեզանում, ցավոք, դեռևս ոչ բոլորն են ապրում իրենց աշխատավարձով։

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի նախագծի երկրորդ մասի երրորդ բաժնում նշվում է. «Կոմունիզմի առաջին փուլի ընթացքում աշխատավորների եկամուտների հիմնական աղբյուրը մնում է ըստ աշխատանքի վարձատրությունը։ Անհրաժեշտ է մշտապես կատարելագործել աշխատավարձի համակարգը, որպեսզի այն լիովին հաշվի առնի աշխատանքի քանակն ու որակը, նրա պայմաններն ու արդյունքները, խթանի աշխատողների որակավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրանքի որակի բարելավումը, ռեսուրսների բոլոր տեսակների տնտեսումը»։ Առաջարկում ենք այստեղ ավելացնել. «**...որպեսզի այն է՛լ ավելի գործուն կերպով ծառայի որպես սոցիալիզմի օրոք սոցիալական արդարության հիմնական սկզբունք, նպաստի սոցիալական արդարության բոլոր սկզբունքների բնականոն գործառնությանը և հետագա անշեղ զարգացմանը**»։ Այնուհետև՝ ինչպես տեքստում։

Կրկին անդրադառնանք կուսակցության սոցիալական քաղաքականության հիմնական (չորս) խնդիրների ձևակերպմանը նոր խմբագրույթի նախագծում։ Կարծում ենք, որ «հասարակական հարաբերությունների բոլոր հիմնական ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի ավելի ու ավելի լրիվ իրականացումը» ձևակերպումը չի կարող համարվել առանձին խնդիր, մյուս խնդիրների հետ մի կարգի, ինչպես որ տրված է նախագծում։ Իսկապես, դժվար չէ համոզվել, որ այդ խնդիրները՝ սովետական մարդկանց կյանքի և աշխատանքի պայմանների անշեղ բարելավումը, դասակարգերի և սոցիալական խմբերի ու խավերի մերձեցումը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարումը, ազգային հարաբերությունների կատարելագործումը ոչ այլ ինչ են, քան սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների խորացում։ Բացի այդ, սոցիալական արդարության սոցիալիստական սկզբունքները ներթափանցում են կուսակցության և պետության գործունեության բոլոր ասպեկտներն անխտիր։ Դրանք են, օրինակ, նախագծի բաժիններում զետեղված դրույթները աշխատավորական կոլեկտիվի դերի բարձրացման, ժողովրդի սոցիալիստական ինքնավարության, սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման զանազան կողմերի մասին և այլն։ Ուստի մենք առաջարկում ենք «սոցիալական արդարության սկզբունքի» մասին ձևակերպումը դուրս հանել թվարկվող խնդիրների շարքից և տալ դրանցից առաջ, առանձին, «**Կուսակցությունը, նպատակ ունենալով անշեղորեն կատարելագործել հասարակական բոլոր հարաբերությունները սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների ավելի ու ավելի լրիվ իրականացման հիման վրա, իր սոցիալական քաղաքականության առաջնահերթ խնդիրներն է համարում հետևյալը**»։ Այնուհետև տալ թվարկումը, ինչպես տեքստում է (առանց, հասկանալի է, «սոցիալական արդարությանը» վերաբերող կետի)։

Մյուս կարևոր հարցը սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների գործառնության և հետագա խորացման երաշխիքների հարցն է։ Ծրագրի նախագծում լոկ արհմիությունների մասին դրույթում է ասված (երկրորդ մաս, չորրորդ բաժին), որ դրանք մասնավորապես պետք է «զար-



գացնեն սոցիալական արդարության սկզբունքների կատարումը վերահսկելու հասարակական ձևերը»։ Կարծում ենք, սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների անշեղ կենսագործումը և վերահսկումը վերաբերում է բոլոր սոցիալական հաստատություններին առանց բացառության։ Ուստի մենք առաջարկում ենք «Սովետական հասարակության քաղաքական սիստեմի զարգացումը» բաժնում, որտեղ ասվում է, որ «գործելով սահմանադրության շրջանակներում, ՍՄԿԿ-ն ուղղություն է տալիս և կոորդինացնում պետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքը, հոգում է այն մասին, որ նրանցից յուրաքանչյուրը լիակատար չափով կատարի իրեն ներհատուկ ֆունկցիաները», ավելացնել՝ «**...լիովին երաշխավորի սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների գործառնությունը և նպաստի դրանց հետագա խորացմանը**»։

Իսկ առհասարակ ի՞նչ իմաստ և նշանակություն ունի ՍՄԿԿ ծրագրում սոցիալական արդարության հարցերի այսքան մանրամասն քննարկումը։ Այս հարցը հատկապես կարևոր կդառնա ՍՄԿԿ XXVII համագումարից հետո, կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի, ինչպես նաև համագումարի այլ նյութերի պրոպագանդման և մեկնաբանման տեսակետից։ Այստեղ ահա անհրաժեշտ է ամենից առաջ ուշադրություն դարձնել նախագծի հետևյալ դրույթին (երկրորդ մաս, բաժին առաջին). «Նախատեսված խնդիրների հաջող լուծումը կուսակցությունը կապում է **մարդկային գործոնի դերի բարձրացման հետ**։ Սոցիալիստական հասարակությունը չի կարող արդյունավետորեն գործել, չգտնելով հասարակական կյանքի բոլոր ոլորտներում մասսաների ստեղծագործական գործունեության զարգացման նոր ուղիներ։ Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է միլիոնավոր մարդկանց տնտեսատիրոջ նման շահագրգիռ, պատասխանատու, գիտակից և ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը»։ Հենց այդ մարդկային գործոնի ակտիվացմանն են ըստ էության ուղղված սոցիալական արդարության մասին բոլոր դրույթները։

Իրոք, մեզ համար կարևոր է ոչ միայն սովետական հասարակության հետագա կատարելագործումը սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքների հիման վրա, այլ նաև դրանց ռեալ, գործուն լինելու գիտակցումը սովետական մարդկանց կողմից, նրանց նվիրվածությունը այդ սկզբունքներին և իդեալներին, դրանք անշեղորեն կենսագործելու նրանց պատրաստակամությունը և խանդավառությունը։ Մարքսիզմը երբեք ընդհանուր ոչինչ չի ունեցել և չունի «բարոյական սոցիալիզմի» հետ, այսինքն՝ անցյալում և ներկայումս Արևմուտքում լայնորեն տարածված՝ լոկ բարոյախոսական դիրքերից կապիտալիզմի արատների քննադատության և սոցիալիստական գաղափարների հիմնավորման հետ։ Մարքսիստական դրույթները ամենից առաջ խստիվ գիտական են։ Ինչպես վկայում է պատմությունը, «արդարության» պահանջը, եթե այն զուրկ է գիտական հիմքից, ոչ միայն չի նպաստում իսկապես արդարացի հասարակության ձևավորմանը, այլև անգամ կարող է շրջվել աշխատավոր մարդու դեմ։ «Արդարության» լոզունգով անարդարություններ են անում աշխատավորությանը ճնշողները և նրանց գաղափարական սպասավորները, որոնց համար, Վ. Ի. Լենինի դիպուկ բնութագրությամբ, արդարությունը լոկ ֆրազ է, դատարկ խոսք (տե՛ս ԵԼԺ, հ. 34, էջ 419)։ Ուստի արդարության վերացական, կուսակցականորեն ոչ հստակ ձևակերպման պահանջի առթիվ կարելի է կրկնել լենինյան միտքը. «Հավասարությունը խաբեություն է, եթե նա հակասում է կապիտալի ճնշումից աշխատանքի ազատագրության շահերին» (նույն տեղը, հ. 38, էջ 440)։

Սակայն մարքսիզմին միանգամայն խորթ է նաև մյուս ծայրահեղությունը՝ էկոնոմիզմը, սոցիալական պրոբլեմների լուծման անմիջական բխեցումը տնտեսության զարգացումից։ Մարքսիզմը ոչ միայն չի նսեմացրել հոգևոր գործոնի դերը, այդ թվում նաև արդարության և անարդարության մասին մարդկանց պատկերացումների դերը, այլև ուղղակիորեն նպատակամղված է եղել և է դեպի մարդկանց գիտակցության փոփոխումը, աշխարհայացքի ընդլայնումը, աշխատավոր ժողովրդի կողմից իր սեփական շահերի խոր գիտակ-

ցումը և հանուն դրանց իրագործման պայքարի ակտիվացումը։ Մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը գործով ապացուցեց, թե ինչ հզոր, անպարտելի ուժ է աշխատավոր ժողովրդի արդարության ձգտումը։

Այսօր էլ, երբ մեր կուսակցությունը առաջադրում է է՛լ ավելի բարդ խնդիրներ, առաջնորդում է դեպի տնտեսական և սոցիալական զարգացման նորանոր նվաճումների, կազմակերպում և ոգևորում է աշխատավորական զանգվածներին, երբ համայն աշխարհն է ծանոթանում սովետական կոմունիստների գլխավոր քաղաքական փաստաթղթում բովանդակվող գաղափարներին, հսկայական նշանակություն են ձեռք բերում թե՛ արդարության ու անարդարության տեսական մեկնաբանումները և թե բարոյական գիտակցության մակարդակում դրանց մասին պատկերացումները։ Դրանք հենց ակտիվացնում են մարդկային գործոնը՝ ոգևորում սովետական մարդկանց, տոգորում նրանց վստահությամբ ՍՄԿԿ ստրատեգիական նպատակի՝ կոմունիզմի վերջնական հաղթանակի նկատմամբ։ «Դեպի այդ նվիրական նպատակը մեր ժողովրդի առաջընթաց շարժումը,— ասված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի եզրափակիչ մասում,— կբազմապատկի հումանիզմի և սոցիալական արդարության սկզբունքներով հասարակության վերակերտման գաղափարների ձգողական ուժը։ Դրանք մարդկանց մտքերն ու սրտերը նվաճում են հասարակության առավել կատարյալ կազմակերպման օրինակով, արտադրողական ուժերի անշեղ աճի, ստեղծարար աշխատանքի համար, մարդու երջանկության և բարեկեցության համար պայմաններ ապահովելու օրինակով, ագրեսիվ պատերազմները վճռականապես մերժելով, իրավահավասարության և համընդհանուր անվտանգության հիման վրա ժողովուրդների միջև խաղաղության և լայն համագործակցության սկզբունքների հաստատումով»։

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԱՄԵՆԻՑ ԱՌԱՋ՝ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՀԱՄԱԳՈՒՄԱՐՅԱՆ ԾՐԱԳՐԱՅԻՆ փաստաթղթերը շարունակում են մնալ մեր ձեռնարկության՝ Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման կոլեկտիվների ուշադրության կենտրոնում։ Մեր մարդիկ մեկ անգամ ևս համոզվում են այն հստակ ճշմարտության մեջ, որ կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր ուղղությունն ու կարևորագույն նպատակը շարունակում է մնալ ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը, որ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման պլանների իրագործման աշխատանքը ծայր է առնում նաև մեր բազմահազարանոց կոլեկտիվում, նյութական արտադրության ակունքներում՝ բրիգադներում ու հերթափոխություններում։ Եվ, բնականաբար, այս օրերին է՛լ ավելի է բարձրանում կիրովցիների պատասխանատվությունը նոր ծրագրերի իրագործման համար։ Նրանք լավ են ըմբռնում, որ արտադրանքի որոշ տեսակներ Միության ժողովրդական տնտեսությունն ստանում է միայն մեր կոլեկտիվից և պետք է աշխատել ուժերի գերագույն լարումով։

Միավորման մարդիկ, ամենայն ուշադրությամբ ուսումնասիրելով նախահամագումարյան փաստաթղթերը, որոշում են իրենց անելիքները, ինչպես զուտ արտադրական, այնպես էլ քաղաքական-կազմակերպական, բարոյադաստիարակչական ասպարեզներում։

Երկրում առաջին անգամ մեզ մոտ շարք մտավ բութադիենից քլորոպրենի ստացման նոր արտադրությունը։ Նախահամագումարյան մրցության օրերին կոլեկտիվը կարողացավ լիովին յուրացնել դրա տեխնոլոգիական պրոցեսները և ձգտում է նվաճել նախագծային կարողության մակարդակը։ Մեր կա-



ևոր խնդիրներից են նաև գործարկված օբյեկտներում նոր կաուչուկների ստացման տեխնոլոգիական հոսքային գծերի անցկացում-կարգաբերումը և տեխնոլոգիական պրոցեսների յուրացումը։ Շուտով դրանք էլ կլուծենք։

Ընթերցելով ՍՄԿԿ Կենտկոմի նախահամագումարյան փաստաթղթերը, խորամուխ լինելով առաջադրված դրույթների ու խնդիրների մանրամասների մեջ՝ մեզնից յուրաքանչյուրը որոշում է իր անելիքները, հայտնում իր նկատառումները այս կամ այն դրույթի և հարցի շուրջ։

Մենք գիտենք, որ կուսակցությունը միշտ էլ վարում է լենինյան կադրային ճիշտ քաղաքականություն և պահանջում է, որ տեղերում կուսակցական մարմիններն ու սկզբնական կազմակերպությունները անշեղորեն կենսագործեն լենինյան սկզբունքները։ Այնուամենայնիվ, դեռևս լինում են շեղումներ այդ ճիշտ կուրսից։ Քիչ չեն դեպքերը, երբ արտադրական ձեռնարկություններում դրանց մեծ ու փոքր ստորաբաժանումներում առանձին ղեկավարներ մարդկանց աշխատանքի առաջ քաշելիս հաշվի են առնում ոչ թե նրանց ընդունակությունները, սոցիալիստական ձեռներեցությունը, բարոյաքաղաքական մյուս հատկանիշները, այլ, առաջին հերթին, անձնական նվիրվածությունը։ Սա կադրային քաղաքականության լենինյան սկզբունքների խախտման այնպիսի դրսևորում է, որի պատճառով նախ՝ մեծապես տուժում է գործը, ապա՝ կոլեկտիվում ստեղծվում են զանազան խմբավորումներ, բարոյահոգեբանական անառողջ մթնոլորտ, երբեմն էլ՝ սուր միջադեպային հետևանքներով։ Ժամանակն է, որ նման դրսևորումների դեմ պայքարի անհրաժեշտությունը շեշտվի ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության մեջ։

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի 2-րդ մասի 6-րդ պարբերությունում ասված է. «Կոմունիստական կացութաձևի անբաժանելի հատկանիշը հասարակության անդամների գիտակցականության, հասարակական ակտիվության, կարգապահության և ինքնակարգապահության բարձր մակարդակն է, որի դեպքում կոմունիստական համակեցության միասնական հանրաճանաչ կանոնների կիրառումը կվերածվի յուրաքանչյուր մարդու ներքին պահանջմունքի ու սովորության»։ Ուշադրություն դարձնենք «կվերածվի» բառի վրա։ Մենք ինքներս էլ մեր շրջապատում տեսնում ենք, որ ոչ բոլոր կոլեկտիվներում է, որ սոցիալիստական համակեցության կանոնների կիրառումը վերածվել է կոլեկտիվի և ընդհանրապես հասարակության բոլոր անդամների պահանջի ու սովորության։ Ավելին, կարգապահության, ինքնակարգապահության ամրապնդման նկատմամբ հսկողություն սահմանելն անգամ դեռևս չի դարձել ներքին պահանջ ու սովորություն։ Հետևաբար, նպատակահարմար է սոցիալիստական համակեցության կանոնների կիրառման և կարգապահության ամրապնդման ասպարեզում ընդլայնել ադմինիստրացիայի գործունեության նրկատմամբ վերահսկողություն իրականացնող հանձնաժողովների իրավունքները։ Այդ կապակցությամբ առաջարկում եմ կանոնադրության 59-րդ կետի ծանոթագրությունը շարունակել այսպես. «որոնք կարող են անհրաժեշտության դեպքում արտադրատնտեսական ու կուսակցական կարգապահական խախտումների վերաբերյալ հարցեր նախապատրաստել և ներկայացնել կուսակցական կազմակերպության քննարկմանը կամ այդ մասին իրազեկ պահել վերադաս կուսակցական մարմիններին»։

«Նաիրիտի» մարդիկ այս օրերին գործարար պայքար են ծավալել կուսակցության առաջադրած տնտեսական ու սոցիալական խնդիրներն անվերապահորեն լուծելու, տասներկուերորդ հնգամյակի մեր առաջադրանքները պատվով կատարելու համար։ Միավորման կոմունիստները արժանավայել գործերով են դիմավորում Հայաստանի կոմկուսի XXVIII և ՍՄԿԿ XXVII համագումարները։

**Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման 1—11 բ արտադրամասի ապարատավարների բրիգադավար, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս

# ԴՊՐՈՑԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԴՐՍԵՎՈՐՈՒՄ

Այս օրերին լուսավորության ասպարեզի աշխատողները հանդես են գալիս որպես հմուտ պրոպագանդիստներ, կուսակցության ծրագրային դրույթները ժամանակին հասցնում ծնողական համալսարանների ունկնդիրներին, երիտասարդ մայրերին ու հայրերին։ Մեծացել են ուսուցչին ներկայացվող պահանջները և գիտատեխնիկական առաջընթացի հորձանուտում հնարավոր չէ առաջնորդվել երեկվա չափանիշներով։

Կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի նախագծում նշված է. «Երկրում իրականացվող հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը հիմնըվում է միասնական աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքների ստեղծագործական զարգացման վրա և նպատակամղված է այն բանին, որ է՛լ ավելի բարձրացվի երիտասարդության կրթության ու դաստիարակության մակարդակը...»։ Ինչ խոսք, դա դյուրին խնդիր չէ։ Ինչպես դըպրոցների ղեկավարներից, այնպես էլ ամեն մի շարքային ուսուցչից պահանջվում են լարված ու քրտնաջան աշխատանք, կոմպլեքսային մոտեցում։

Կուսակցության ծրագրի նոր խմբագրույթը նոր մտորումների առատ աղբյուր է մեզ համար։ Ելնելով այդ փաստաթղթի պահանջներից՝ ցանկանում ենք ներկայացնել մեր նկատառումները, որոնք սերտորեն առնչվում են աճող սերնդի կրթությանն ու կոմունիստական դաստիարակությանը։ Մեր համոզմամբ ուսուցանելը մեծ արվեստ է, որի բարձունքները նվաճելը ծիրք ու նվիրում, անասելի ջանք ու եռանդ է պահանջում։ Ուսուցիչը կոչված է իր սաներին զինելու խոր ու կայուն գիտելիքներով, հետևողականորեն նպաստելու նրանց քաղաքացիական հասունացմանը և ֆիզիկական ներդաշնակ զարգացմանը։ Դրա համար նրանից պահանջվում է միշտ լինել հասարակական կյանքի հորձանուտում, գիտատեխնիկական առաջընթացի ավանգարդում։

Լուսաշող են լենինյան կուսակցության ծրագրային նպատակադրումները. «Դպրոցը կոչված է սովորողներին պատվաստելու հայրենիքի հանդեպ սիրո, մեծերի, ծնողների ու ուսուցիչների հանդեպ հարգանքի զգացում, նրանց դաստիարակելու ուսման և աշխատանքի որակի, իրենց վարքագծի համար բարձր պատասխանատվության ոգով, զարգացնելու աշակերտական ինքնակառավարումը»։ Այդ ամենի անշեղ իրականացումը պատվաբեր ու պատասխանատու խնդիր է։ Այստեղից էլ համապատասխան հետևություն. դպրոցի հաջողությունները պայմանավորված են ուսուցչական կադրերի հաջող ընտրությամբ։

Տարիների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ հաճախ մանկավարժական բուհերը համալրվում են այնպիսի դիմորդներով, որոնցից շատերը չունեն մանկավարժ դառնալու հակում, և դա էլ հետագայում բացասաբար է անդրադառնում նրանց կյանքում մասնագիտական ինքնահաստատման վրա։ Նորություն ասած չենք լինի, եթե մեկ անգամ ևս նշենք, որ այդպիսի պատանիների ու աղջիկների համար մանկավարժական ինստիտուտ ընդունվելը նման է ինքնաթիռի հարկադրական վայրէջքի։ Նրանք դպրոց են մտնում առանց խանդավառության, չեն մերվում ուսուցչական կոլեկտիվի հետ, պատճառ են դառնում բազում անախորժությունների։ Ելքը դժվար չէ գտնել։ Ժամանակն է, որ հանրակրթական դպրոցի ուսուցչական կոլեկտիվի բնութագիրը պարտադիր կարգ լինի տվյալ շրջանավարտին մանկավարժական բուհ ընդունվելու համար։ Ուսման տասը տարիների դասղեկներն ու մյուս դասատուները խորապես տեղյակ են դառնում աղջիկների ու պատանիների նախասիրություններին, գնահատում նրանց կատարած հասարակական աշխատանքները, փոքրիկների հետ աշխատելու շնորհքը և այլն։

Ո՞մ հայտնի չէ, որ սերնդափոխությունը կյանքի հավերժական ուղեկիցն է։ Ավագներին պետք է փոխարինեն շնորհալի երիտասարդները, կրկնում ենք՝ շնորհալիները, նորի և առաջավորի ջատագովները։ Այս խնդրում, ելնելով երեխաների ու դպրոցի շահերից, պետք է դրսևորել հեռատեսություն ու նրբանկատություն։ Ասվածը հաստատելու համար բերենք մեր կոլեկտիվի օրինակը. Ներկայումս մեր դպրոցում աշխատում են քսաներկու փորձառու դասատուներ։ Հանրահայտ է նրանց ծանրակշիռ վաստակը։ Անվարան կարող ենք ասել, որ Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան հայկական միջնակարգ դպրոցի բարի համբավը ձեռք է բերվել նաև այդ ուսուցիչների նվիրական աշխատանքով։ Ծնողներն ու աշակերտները խոր ակնածանքով են տալիս նրանց անունները։ Երիտասարդ մայրերը շատ բան են սովորում այդ վաստակաշատ մանկավարժներից։ Մի խոսքով, նրանք մեր դպրոցի սյուներն են, և նրանց նկատմամբ մենք պետք է հոգատար լինենք, հնարավորին չափ խելամիտ օգտագործենք ավագ ուսուցիչների փորձն ու գիտելիքները։ Եթե այդ ընկերները այժմ միանգամից թողնեն դպրոցը, և նրանց փոխարինելու գան ուսուցչական աշխատանքի փորձ չունեցող նորավարտներ, ապա ամենից առաջ կխաթարվի ուսուցման նորմալ ընթացքը, հունից դուրս կգա երեխաների հետ տարվող դաստիարակչական գործը։ Հետևապես ներթափոխությունը պետք է կատարվի պլանաչափ, մտածված, այն հաշվով, որ նորեկը դասավանդման փորձ ու վարպետություն ձեռք բերի հեղինակավոր ավագների ամենօրյա օգնությամբ։

Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի ուղղությունների կենսագործման ճանապարհին տակավին կան չհաղթահարված արգելքներ, բոլորին մտահոգող դժվարություններ։ Դրանցից մեկը, մեր կարծիքով, դպրոց—ընտանիք—աշխատանքային կոլեկտիվ եռանկյունու աններդաշնակ գործունեությունն է, որի մասին շատ է գրվել ու խոսվել, սակայն, դժբախտաբար, դեռևս հարցը վերջնական լուծում չի ստացել։ Դրան առնչվում է նաև երեխաների անսխալ դաստիարակության պարագան։ Ճշմարտություն է, որ շատերն են զբաղվում ուսուցման հարցերով, բայց դաստիարակելու դժվարին գործը ներկայումս ընկած է ուսուցչի ուսերին, իսկ եթե վերջինս էլ վատ դաստիարակ է. հետևությունը հայտնի է։

Միայն վերոհիշյալ եռանկյունու համաձայնեցված աշխատանքով կարելի է հասնել ցանկալի արդյունքի։ Կուսակցության ծրագրի նոր խմբագրույթում առանձնակի նշանակություն է տրվում մեր մարդկանց աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։ Դա, մեր համոզմամբ, հարցերի հարցն է, որովհետև միայն բարձր արտադրողականությունը մեզ հնարավորություն կտա ստեղծել ավելի բարեկեցիկ կյանք։ Շատ լավ կլիներ, որ դպրոցի հաջողությունները գնահատելիս առաջին հերթին հաշվի առնվեր աշակերտների ռեալ առաջադիմությունը։ Վատ աշխատանքի համար ամենից առաջ պետք է պատասխանատվություն կրի նրա հեղինակը։ Դպրոցի հեղինակությանը մեծ վնաս է հասցնում ձևամոլությունը։

Քիչ չեն այնպիսի դեպքերը, երբ դպրոցում դժվարությամբ ձեռք բերածը հիմնահատակ է արվում ընտանիքում, հատկապես խաթարված ընտանիքում։ Վերջին տարիներին որոշ ծնողներ ոչնչով չպատճառաբանված «հոգատարություն» են ցուցաբերում իրենց երեխաների նկատմամբ։ Լավ ու ապահով ապրելակերպը չպետք է շփոթել քաղքենիական կենցաղի հետ։ Անաշխատ եկամուտներով ապրող ծնողների երեխաները հաճախ դառնում են իրենց ընտանիքի հայելին՝ արտացոլելով նրա սովերոտ ու խոցելի կողմերը։ Նման ծնողների զավակները դժվար են մերվում դասարանական կոլեկտիվին։

Երեխայի հոգեկան ու գաղափարական կերտվածքի վրա անջնջելի ազդեցություն է թողնում ընտանիքը։ Ցավոք, այսօր դեռևս պատշաճ հասարակական հնչեղություն չի ստացել ծնողի և ընտանիքի պատասխանատվությունը դեռահասների համակողմանի դաստիարակության խնդրում։ Աշխատանքային կոլեկտիվներում չի մշակվել որոշակի վերաբերմունք։ Տարին մեկ կամ երկու անգամ հարևանցիորեն խոսվում է դպրոցին օգնելու մասին և արագ մոռացվում։ Մինչդեռ երեխաների դաստիարակությունը մշտահոլով պրոցես է, այն երբեք արձակուրդ չունի։ Եթե եռանկյունու երկու կողմերը բացակայում են, ապա դպրոցը հաճախ կանգնում է ծանր երկընտրանքի առջև. մեծանում են մաղումները, «դժվար» դաստիարակվող դեռահասները զանցանքներ են թույլ տալիս, խոտորվում ճիշտ ճանապարհից։ Հետևանքը դժվար չէ պատկերացնել։

Դպրոցը, ընտանիքը և աշխատանքային կոլեկտիվը համատեղ ուժերով պետք է պայքարեն, ինչպես նշված է ծրագրի խմբագրության նախագծում, «...ներդաշնակորեն զարգացած, հանրորեն ակտիվ անհատի ձևավորման ուղղությամբ, որն իր մեջ զուգորդի հոգևոր հարստություն, բարոյական մաքրություն և ֆիզիկական կատարելություն»: *Իսկ այդ վսեմ հատկանիշներն առաջին հերթին սկիզբ են առնում ընտանիքից: Եթե ընտանեկան միկրոկլիման ամպրոպային է, կարելի է չտարակուսել, որ հիմնավորապես խաթարված է երեխայի դաստիարակությունը: Մեր օրերում համերաշխ և առողջ ընտանիքի համար պայքարը միաժամանակ պայքար է աճող սերնդի երջանկության համար, դպրոցի դերն ըստ ամենայնի բարձրացնելու համար:*

*Երեխան վաղ հասակից պետք է գիտակցի ծնողների անկասելի հեղինակությունը: Կարլ Մարքսի բնորոշմամբ՝ «...ծնողների սիրտը ամենագթասիրտ դատավորն է, ամենասրտակից բարեկամը, այն սիրո արեգակն է, որի հուրը ջերմացնում է մեր ձգտումների ամենանվիրական կենտրոնը»: Դրա հետ միասին դեռահասը դպրոցում պետք է գիտակցի, որ ինքը ծնողական արմատից երկար սնվել չի կարող, եթե զրկված է սեփական արմատից:*

*Այստեղից էլ ծագում է օրինական պահանջը՝ աշխատասիրություն մանկուց, ուրիշի, ամենից առաջ ծնողների արդար վաստակը գնահատելու, ըստեղծված բարիքները խնայողաբար օգտագործելու պատրաստակամություն, ընտանեկան լավ ավանդույթները հարգելու կարողություն: Առանց այդ հատկանիշների չի կարող լինել երջանիկ մանկություն:*

*Ընտանիքն ու դպրոցը կոչված են երեխայի հոգում սերմանելու սեր դեպի սովետական հայրենիքը: Այդ նրանք են դեռահասներին սովորեցնում ըմբռնել կյանքի իմաստն ու գեղեցկությունը, հարգալից վերաբերվել շրջապատի մարդկանց, օժտված լինել սեփական պարտքի զգացումով, երախտապարտ լինել ծնողների, մեծերի նկատմամբ, ներդաշնակել հասարակական ու անձնական շահերը: Հենց ուսուցման առաջին օրվանից երեխայի մեջ պետք է ներարկել աշխատասիրություն, ինքնուրույնություն, պատասխանատվություն, զարկ տալ նրա նախասիրությունների դրսևորմանը, զերծ պահել նրան ծուլության հակումներից, շահամոլական նկրտումներից: Չարի արմատը պետք է այրվի ընտանիքի և դպրոցի համատեղ ուժերով:*

*ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի լույսի ներքո, անդրադառնալով այսօրվա դպրոցի առջև ծառացած խնդիրներին, մենք խորապես գիտակցում ենք մեր սրբազան պարտքը հայրենիքի հանդեպ: Ինչպես միշտ, Սովետական Հայաստանի ուսուցիչները պատվով կկատարեն կուսակցության պատվիրանը, միշտ կմնան պայքարի առաջին գծում, աչքի կընկնեն քաղաքացիական ակտիվ դիրքով, կոմունիստական համոզվածությամբ: Մեր կոլեկտիվի բոլոր անդամներն անխտիր հանգամանորեն ուսումնասիրում են այդ պատմական փաստաթուղթը, վերակառուցում իրենց ամենօրյա աշխատանքն այն հաշվով, որպեսզի անշեղորեն իրականացվեն դպրոցի ռեֆորմի ուղղություններով արտացոլված պահանջները: Դպրոցի յուրաքանչյուր մանկավարժ հաշիվ է տալիս, որ ինքը լոկ գիտելիքներ հաղորդող մասնագետ չէ, նա միաժամանակ պետք է լինի իր սաների հոգու ճարտարապետը, աշխատի խանդավառությամբ, բազմակողմանիորեն նրանց նախապատրաստի կյանքին:*

*Միայն բարոյական և գաղափարական բարձր հատկանիշներով օժտված ուսուցիչը կարող է ներազդել սովորողների հոգեկան աշխարհի վրա, բարձր հեղինակություն ունենալ ծնողների և գործընկերների շրջանում: Այդ առումով մեր դպրոցում առաջնահերթ նշանակություն ենք տալիս ինքնակրթությանն ու ինքնակատարելագործմանը: Նա, ով չի ցանկանում սովորել, իրավունք չունի սովորեցնողի դեր ստանձնել:*

*Կարծում ենք, որ ըստ ամենայնի պետք է վերակառուցվի ուսուցիչների կատարելագործման համակարգը: Տարիներ շարունակ կազմակերպվող վերապատրաստման դասընթացները քիչ բան են տալիս ունկնդիրներին: Դասընթացներում տիրապետողը վերացական դատողություններն են, քիչ են առաջավոր փորձի, պրակտիկ, լաբորատոր աշխատանքի դասերը:*

*Վերակառուցման խիստ կարիք ունի կադրերի հետ տարվող աշխատանքը:*



*Քիչ չեն դեպքերը, երբ կոլեկտիվի ղեկավար է նշանակվում սահմանափակ գիտելիքների տեր, ներքին բարձր կուլտուրա, ղեկավարելու ջիղ չունեցող մանկավարժ: Միթե պարզ չէ, որ նման մասնագետը չի կարող ուղղություն տալ կոլեկտիվի աշխատանքին:*

*Դեռևս մեծ պարտք ունի դպրոցի հանդեպ մանկավարժական գիտությունը: Բազմաթիվ մեթոդական աշխատություններ ու տարբեր մենագրություններ են լույս տեսնում, բայց դրանք չնչին չափով են օգնում դպրոցին ու երիտասարդ ուսուցչին: Չափազանց վատ է մատուցվում դասավանդման և դաստիարակչական աշխատանքների առաջավոր փորձը: Ուսուցչին հրամցվող մեթոդական ուղեցույցները տառապում են սխեմատիզմով, վերացական դատողություններով: Դրանք հաճախ լույս աշխարհ են գալիս չոր ու ցամաք շարադրանքներով, առանց հոգեբանական, գիտական վերլուծության:*

*Պակաս մտահոգություն չի պատճառում հայրերի պրոբլեմը: Դասղեկները նրանց փնտրում են, բայց չեն գտնում, ուսումնառության տասը տարիներին շատ հայրեր ոչ մի անգամ դպրոց չեն գալիս: Ծնողական ժողովներում մայրերն են նստած, տարբեր միջոցառումների ակտիվ նախաձեռնողները դարձյալ մայրերն են, իսկ ո՞ւր են հայրերը, ոչ ոք չգիտի, թե ինչ իրավունքով հայրը պետք է հեռու կանգնի իր երեխայի դպրոցից, հաշվի չնստի դասղեկի հետ:*

*Այսօր հանրակրթական դպրոցների դասատուների գերակշռող մասը կանայք են, մինչդեռ տղամարդ մանկավարժները մեծ անելիքներ ունեն դպրոցում: Փաստ է, որ տարեցտարի նվազում է տղամարդ ուսուցիչների թիվը: Ասենք, որ շատ են դրա պատճառները; բայց չափազանց մտահոգիչ է այն, որ մասնավորապես տղաները տասը տարի անընդմեջ առնչվում են կին դասղեկների հետ: Դպրոցի կոմերիտական ժողովներում բարձր դասարանցիները հաճախ հարց են տալիս.*

*— Մեզնից փերինե՞ր պետք է պատրաստեք, թե՞ հայրենիքի զինվորներ: Մեզ հետաքրքրող շատ հարցեր մնում են անպատասխան, որովհետև կին դասղեկի հետ չենք կարող կիսվել, ինչո՞ւ այս հարցը չի լուծվում դրականորեն:*

*Եվ մեր տղաներին ինքներս չենք կարողանում սպառիչ պատասխան տալ, որովհետև դա առաջին հերթին պետք է լուծեն ուսուցչական կադրեր պատրաստող բուհերը և դրանց վերադաս մարմինները: Սովորաբար աշակերտն աշխատում է նմանվել իր ուսուցչին: Աղջիկները սիրով ընդօրինակում են իրենց ուսուցչուհու նազանքը, խոսելու և վարվեցողության կուլտուրան, ճաշակով հագնվելը, ընկերական շրջապատում դրսևորվող կանացի նրբանկատությունը և այլն, իսկ պատանիներին հրապուրում են հերոսների սխրագործությունները, դժվարությունները հաղթահարելու վճռականությունը, հայրենիքը պաշտպանելու պատրաստակամությունը, ընկերուհիներին հովանավորելու ձգտումը, խիզախ ռազմիկ դառնալու երազանքը և այլն: Դրանք չափազանց կարևոր հատկանիշներ են, որոնք սովորաբար երեխան ձեռք է բերում ընտանիքում ու դպրոցում: Իրականացվող ռեֆորմը պահանջում է, որ ուսուցչական կոլեկտիվները մշտապես համալրվեն նորավարտ էնտուզիաստներով, քանզի տղամարդ ուսուցիչների կարիքը մեծ է ամենուրեք: Դպրոցի շահերը պահանջում են, որ դրականորեն լուծվի այդ հարցը:*

*Համաժողովրդական քննարկման դրված կուսակցության ծրագրի խմբագրության նախագծում ասված է.* «ՍՄԿԿ-ն կշարունակի կատարելագործել ժողովրդական կրթության համակարգը՝ հաշվի առնելով սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պահանջմունքները, կոմունիստական շինարարության խնդիրները, այն պահանջները, որ ներկայացնում է գիտության ու տեխնիկայի առաջընթացը»:

*Ոգևորված դպրոցի առջև դրված նոր խնդիրներով, ուսուցչական մեր կոլեկտիվը լի է վճռականությամբ՝ անշեղորեն կենսագործելու հարազատ կուսակցության կանխագծումները:*

**ՕՖԵԼՅԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի
դիրեկտոր, հանրապետության վաստակավոր
ուսուցիչ

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԿԱՆԽՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Ի. ԿՐԻՎՈԳՈՒԶ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՈՒԹՍՈՒՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԸ, երբ Մ. Ս. Գորբաչովի խոսքերով ասած, աշխարհի բոլոր ժողովուրդներն ունեն մեկ ընդհանուր թշնամի՝ միջուկային պատերազմի սպառնալիքը, մեկ ամենագլխավոր խնդիր՝ այդ սպառնալիքի վերացումը, բնութագրվում են միջուկային աղետի կանխման համար մղվող պայքարում բոլոր երկրների կոմունիստների պատասխանատվության և դերի մեծացումով։ Այդ պրոցեսն ունի խոր պատմական արմատներ, օբյեկտիվ հիմքեր և զարգանում է բազմապլանայնորեն։ Այն իր արտացոլումն է գտել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում, որտեղ ասված է, թե պատերազմը կանխելը, մարդկությանը կործանումից փրկելը «սոցիալիզմի, մեր մոլորակի բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի պատմական կոչումն» է։*

*Նախագծում նշված է. «Կոմունիստները, որոնք մշտապես եղել են սոցիալական և ազգային ճնշման դեմ պայքարող ամենահետևողական մարտիկները, ներկայումս գտնվում են նաև աշխարհում խաղաղության պահպանման, մարդկանց ապրելու իրավունքի համար մղվող պայքարի առաջավոր գծում» և ՍՄԿԿ-ի միջազգային քաղաքականության գլխավոր նպատակների թվում հիշատակված են. «վերացնել համաշխարհային պատերազմի սպառնալիքը, հասնել ընդհանուր անվտանգության ու զինաթափման»։*

*Խաղաղության համար մղվող պայքարում կոմունիստների պատասխանատվության ու դերի մեծացման պատմական արմատները հասնում են մինչև հասարակության կոմունիստական վերակառուցման համար շարժման ծագումը, որն սկզբից ևեթ ձգտում էր վերացնել ժողովուրդների միջև պատերազմների պատճառները՝ ազգերի, ազգությունների ու ցեղերի միջև անհավասարությունն ու ճնշումը, վերացնել դրանց աղբյուրը՝ շահագործողական դասակարգերի տիրապետությունը։*

*Մարքսիզմի հիմնադիրները բանվոր դասակարգին կոչ էին անում «տիրապետելու միջազգային քաղաքականության գաղտնիքներին, հետևելու իր երկրի կառավարության դիվանագիտական գործունեությանը և անհրաժեշտության դեպքում հակազդելու այդ գործունեությանն իր տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր երեք հատորով, *հ. 2, «Հայաստան» հրատ., 1973, էջ 15)։ Առաջին ինտերնացիոնալն իր կոչում, որը գրել էր Կ. Մարքսը, պնդում էր, որ նոր հասարակարգում միջազգային սկզբունքը «կլինի խաղաղությունը, որովհետև յուրաքանչյուր ժողովուրդ կունենա միևնույն տիրակալը՝ աշխատանքը»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 5)*։ Խաղաղության ձգտումը դրսևորվեց արդեն առաջին պրոլետարական հեղափոխության՝ Փարիզի կոմունայի ժամանակ և թալանչիական պատերազմների, հատկապես՝ ռուս-ճապոնական պատերազմի դեմ աշխատավորների ավանգարդի մղած պայքարում։*

*Իմպերիալիզմի տիրապետության և իմպերիալիստների կողմից սանձազերծված առաջին համաշխարհային պատերազմի պայմաններում կառավարող շրջանների թալանչիական քաղաքականության դեմ ժողովուրդների պայքարը վերաճեց հեղափոխությունների, իսկ Ռուսաստանում աշխատավորների հաղթանակը ձախողեց իմպերիալիստների պլանները և արագացրեց համաշխարհային պատերազմի ավարտը։ Արդի դարաշրջանի համաշխարհային կոմունիստական շարժման սկիզբը դրած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որն իրականացրին կոմունիստները Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, նոր հասարակության կառուցումն օրգանապես շաղկապեց հանուն խաղաղության ժողովուրդների մղած պայքարին։ Իմպերիալիզմին սովետական ժողովրդի հերոսական դիմադրության և մեր ժողովրդին բոլոր երկրների առաջադեմ ուժերի ցույց տված ինտերնացիոնալ աջակցության շնորհիվ ՍՍՀՄ-ի և կապիտալիստական պետությունների՝ տարբեր հասարակարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցությունը դարձավ Սովետական Միությունում սոցիալիզմի հաջող կառուցման և նրա՝ հանուն խաղաղության, հանուն ազգային ու սոցիալական ազատագրման ժողովուրդների պայքարի հիմնական հենարանի, ամրապնդման պայմանը։*

*Կոմունիստները դարձան երկրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծած ֆաշիստների ու նրանց համախոհների դեմ մղվող պայքարի ամենավճռական և ամենահետևողական մարտիկները։ Բոլոր գաղափարաքաղաքական շարժումներից կոմունիստականը առավել նշանակալից ավանդ ներդրեց ֆաշիզմի դեմ 40 տարի առաջ տարած հաղթանակում։ Ֆաշիստական զավթիչների ջախջախման գործում վճռական դերը պատկանում է կոմունիստների ղեկավարած Սովետական Միությանը։ Իմպերիալիստական առավել ագրեսիվ տերությունների պարտությունը բարենպաստ պայմաններ ստեղծեց մի շարք հեղափոխությունների համար, որոնք հանգեցրին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծմանը և գրեթե բոլոր գաղութների ու կախյալ երկրների քաղաքական անկախությանը։ Բացի այդ, երկրորդ համաշխարհային պատերազմից բոլոր առաջադեմ ուժերը, նախ և առաջ կոմունիստները, դաս քաղեցին. որպեսզի թույլ չտալ պատերազմ, բոլոր ուժերը պետք է հավաքագրել մինչև նրա սկսվելը։*

*Ետպատերազմյան տասնամյակներում իմպերիալիզմի մեղքով տեղի են ունեցել 150 զինված կոնֆլիկտներ, տեղական պատերազմներ, որոնք խլել են միլիոնավոր կյանքեր և պատճառել զգալի նյութական վնասներ։ Բայց աճած առաջադիմական ուժերը կոմունիստների նախաձեռնությամբ, որոնց շարժումը վերածվել է արդիականության ամենաազդեցիկ գաղափարաքաղաքական ուղղության, բազմիցս խափանել են նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելու իմպերիալիստական պլանները՝ գործնականում ապացուցելով դրա կանխման հնարավորությունը։ Դա հիմք տվեց կոմունիստական և բանվորական կուսակցությունների խորհրդակցությանը 1960 թ. հայտարարելու. «Կոմունիստներն իրենց պատմական առաքելությունը տեսնում են ոչ միայն նրանում, որպեսզի համաշխարհային մասշտաբով վերացնեն շահագործումն ու աղքատությունը և մարդկային հասարակության կյանքից ընդմիշտ բացառեն ամեն մի պատերազմի հնարավորությունը, այլ արդեն ժամանակակից դարաշրջանում մարդկությանն ազատեն նոր համաշխարհային պատերազմի մղձավանջից»։ Կոմունիստների ղեկավարած սոցիալիստական ընկերակցության սոցիալ-տնտեսական հաջողությունները և իմպերիալիստական տերությունների նկատմամբ ռազմաստրատեգիական հավասարակշռության հասնելը 70-ական թթ. ապահովեցին լարվածության թուլացման հնարավորությունը, որը նպաստեց սոցիալական առաջընթացին և ազգային անկախության ամրապնդմանը։*

*Այսպիսով, համաշխարհային զարգացման և բուն կոմունիստական շարժման աճի ամեն մի նոր փուլում մեծանում են կոմունիստների պատասխանատվությունն ու դերը՝ ժողովուրդների միջև խաղաղության համար մղվող պայքարում։ Կոմունիստական շարժումը, որը Լենինի կողմից նպատակամղվել է խաղաղությանը, որպես մարդկային հասարակությունը պահպանելու հիմնական խնդիր (ԵԼԺ, հ. 36, էջ 489), արտահայտելով բոլոր ժողովուրդների շահերը, հանդես է գալիս այն ուժերի ավանգարդում, որոնց նպատակն է*

դադարեցնել պատերազմները և, ամենից առաջ, կասեցնել մարդկությանը բնաջնջել սպառնացող միջուկային պատերազմը։

Հանուն ժողովուրդների միջև խաղաղության պայքարում կոմունիստների պատասխանատվության և դերի հետագա մեծացումը 80-ական թթ. օբյեկտիվ պատճառներ ունի։

70-ական թթ. վերջերից, ինչպես հայտնի է, ակտիվացան իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանները, որոնք ձգտում են սպառազինության աճի միջոցով ռազմաստրատեգիական առավելության հասնել սոցիալիստական ընկերակցության նկատմամբ և ամեն գնով, նույնիսկ միջուկային պատերազմով, վերացնել սոցիալիզմը և իր գերիշխանությունը հաստատել աշխարհում։

ԱՄՆ-ի կառավարող շրջաններն ու նրա դաշնակիցները մեծացնում են իրենց զինված ուժերը աշխարհի շատ շրջաններում, որոնք կամայականորեն հայտարարվում են իրենց կենսական շահերի ոլորտներ՝ յուրացնելով դրանց ժողովուրդներին պատժելու և խրախուսելու իրավունքը։ Նորպահպանողականների և իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների առավել հետադիմական ու ագրեսիվ շրջանների հենց նման քաղաքականությունն է ի չիք դարձնում 70-ական թվականներին ձեռք բերված լարվածության թուլացումը և դառնում երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջուկային կործանման, քաղաքակրթության ոչնչացման վտանգի աննախադեպ ուժեղացման աղբյուր։ «Վերջին հաշվով,— ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրի նախագծում,— դա սպառնում է համընդհանուր պատերազմական կոնֆլիկտով, որի դեպքում ո՛չ հաղթողներ կլինեին, ոչ էլ պարտվողներ, բայց կարող էր կործանվել համաշխարհային քաղաքակրթությունը»։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության և Ֆրանսիայի կոմկուսի համատեղ հայտարարությունում (1985 թ. սեպտեմբեր) ասված է. «Ներկա իրադրության մեջ խաղաղության պահպանումը արդիականության գլխավոր խնդիրն է»։ Հայտարարությունում շեշտված է «միջազգային հարաբերությունները լիցքաթափման ու համագործակցության ուղի վերադարձնելու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, մեր մոլորակում միջուկային զենքը կրճատելու, իսկ, վերջին հաշվով, այն լրիվին վերացնելու անհրաժեշտությունը»։

Մարդկության գլխին կախված սպառնալիքը պահանջում է բոլոր ուժերի ակտիվացում՝ միջուկային պատերազմը կանխելու, իմպերիալիզմի առավել ագրեսիվ և հետադիմական շրջաններին հակահարված տալու համար։ «Իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը,— ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում,— դիմակայում է խաղաղության ուժերի աճող հզորությունը»։ Ամենից առաջ հենց դա պայմանավորեց բոլոր երկրների կոմունիստների՝ որպես միջուկային կործանումը կանխելու համար իմպերիալիզմի առավել ագրեսիվ և հետադիմական շրջանների հանցագործ քաղաքականության դեմ հանդես եկող ուժերի ավանգարդի, պատասխանատվության և դերի մեծացումը։

Հանուն խաղաղության պայքարի արդի փուլում կոմունիստների առաջատար դերը, ինչպես և նախկինում, պայմանավորված է նրանց համաշխարհային շարժմանը ներհատուկ հատկանիշներով։ Նախ նրանով, որ այդ շարժումը առավել լրիվ ու ճշտությամբ է արտահայտում բանվոր դասակարգի և մյուս աշխատավորների օբյեկտիվ շահերը, որոնք հանդիսանում են ամեն մի հասարակության հիմնական արտադրաուժն ու գերակշիռ մեծամասնությունը։ Նրանք բոլորից ավելի խորապես են շահագրգռված արտադրաուժերի հետագա զարգացման ճանապարհին եղած ցանկացած հակասությունների, հատկապես՝ իրենց ոչնչացման սպառնալիքի, վերացումով։ Իրենք են կրում սպառազինությունների մրցավազքի և ագրեսիայի հետևանքների ողջ ծանրությունը, առավել ունակ են գիտակցելու միջուկային պատերազմի ավերիչ հետևանքները և նրա նախապատրաստման ու սանձազերծման դեմ ունենալու ամենաարդյունավետ ու մասսայական ելույթները։ Դա հիմք է տալիս տեսնելու նրանց ակտիվացման և համաշխարհային զարգացման վրա ներազդելու հեռանկարը, չնայած այն պատրանքներին, մոլորություններին ու խաբկանքին, որոնց ազ-



դեցության տակ են գտնվում դեռևս իրենց շահերն անբավարար չափով գիտակցող կամ ամենևին չգիտակցող հարյուր միլիոնավոր աշխատավորներ։

Երրորդ, պատերազմը կանխելու պայքարում կոմունիստների ավանգարդային դերի կարևոր հիմք է նրանց կարողությունը. զարգացնելով մարքսիզմ-լենինիզմը՝ բացահայտել մարդկության գլխին կախված ոչնչացման սպառնալիքի իրական պատճառները, նման կործանումը կանխելու ունակ շարժիչ ուժերը, սահմանել օբյեկտիվ խնդիրները, գտնել դրանց լուծման կոնկրետ ուղիները, մասսաներին, ժողովուրդներին բացատրել այդ խնդիրները և ուղիները՝ հաղթահարելով նախապաշարումները, մոլորություններն ու խաբկանքը։ Հենց դա հնարավորություն ընձեռեց կոմունիստներին բացահայտելու քաղաքակրթության համար միջուկային պատերազմի կործանարար լինելը և այդ վտանգի բուն աղբյուրը, առանձնացնելու միջուկային կործանման կանխումը, որպես բոլոր ժողովուրդների գլխավոր ընդհանուր առաջնահերթ խնդիր, մատնանշելու բոլոր հակամիջուկային ուժերն այժմ՝ մինչև միջուկային պատերազմի սկսվելը, մոբիլիզացնելու կարևորությունը, այլապես մարդկությանը գործելու ժամանակ չի մնա։ Դա կոմունիստներին հնարավորություն ընձեռեց նաև առաջադրելու ըստ փուլերի համընդհանուր զինաթափման և խաղաղ գոյակցության պլանները՝ որպես միջուկային կործանման հստակ այլընտրանք, մշակելու և հետևողականորեն անցկացնելու առաջադեմ ուժերի, բոլոր նրանց համագործակցության ստրատեգիա, ովքեր գիտակցում են միջուկային պատերազմի կործանարար լինելը, համոզիչ կերպով մերկացնելով դրա նախաձեռնողների զանազան հնարքներն ու խորամանկությունները։

Վերջապես, էական նշանակություն ունի կոմունիստների խոր ինտերնացիոնալիզմը, որի շնորհիվ միայն նրանց շարժումն է ի վիճակի կոորդինացնելու միջուկային աղետի դեմ բոլոր երկրների տարբեր բնույթի ուժերի ելույթները, կազմակերպելու նրանց համագործակցությունը և ջանքերն ուղղելու ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ։

Կոմունիստները ղեկավարում են սոցիալիստական երկրները։ Նրանք հանդես են գալիս «որպես համաշխարհային մի հզոր սիստեմ, որը հսկայական ազդեցություն է գործում մարդկության զարգացման ու նրա ապագայի վրա, խաղաղության անհաղթահարելի գործոն է և ժողովուրդների անվտանգության առհավատչյա» (Մ. Ս. Գորբաչով, **Սովետական ժողովրդի անմահ սխրանքը**, «Հայաստան» հրատ., 1985 թ., էջ 26)։ Կոմունիստները հանդես են գալիս բանվորական և դեմոկրատական շարժումների ավանգարդում իմպերիալիզմի միջնաբերդում, որտեղ հակամիջուկային ելույթների աննախադեպ թափը դժվարացնում է կառավարող շրջանների ագրեսիվ պլանների իրականացումը։ Կոմունիստները, հանդիսանալով ամենավճռական մարտիկներն ընդդեմ նեոգաղութատիրության, ակտիվորեն պաշտպանում են չմիացած երկրների հասարակայնության ու կառավարությունների ելույթները, որոնք ձգտում են հասնել նեոգաղութատիրության վերացմանը, միջազգային հարաբերությունների դեմոկրատացմանը, զինաթափմանը։ Կոմունիստներն են նախաձեռնողները այդ տարբեր ուժերի համերաշխության, որը խարսխվում է կոնտակտների ընդլայնման և ամենից առաջ միջուկային կործանման կանխման գործում ընդհանուր շահագրգռվածության վրա։

80-ական թթ. միջուկային կործանման կանխման համար մղվող պայքարում կոմունիստների պատասխանատվության ու դերի մեծացումն արտահայտվում է նրանց բազմապլանային գործունեության ընդլայնմամբ ու ակտիվացմամբ։

Առաջնակարգ նշանակություն ունեն սոցիալիստական երկրները ղեկավարող կոմունիստների ջանքերը, երկրներ, որոնց դեմ իմպերիալիզմի առավել ռեակցիոն շրջանները «խաչակրաց արշավանք» են կազմակերպում, հայտարարելով «սոցիալիզմի համաշխարհային ճգնաժամի» մասին։ Միջուկային պատերազմը կանխելու համար մղվող պայքարում սոցիալիստական երկրների կոմունիստների ու ժողովուրդների ամենամեծ ներդրումը, ամենից առաջ, նրանց գործունեությունն է, որն ուղղված է սոցիալիզմի կառուցման և կատարելագործման հրատապ խնդիրների լուծմանը։ Չնայած ամեն մի երկրի

պայմանների ու կոնկրետ խնդիրների յուրօրինակությանը, սոցիալիստական ընկերակցության երկրների կոմկուսների ջանքերը կենտրոնացված են մի քանի կարևորագույն ընդհանուր ուղղությունների վրա: Դրանք ամենից առաջ նպատակամղված են սոցիալիզմի առավելությունների հետ ԳՏՀ-ի նվաճումների միացմանը, որն այդ երկրներից շատերում կապված է սոցիալիստական էկոնոմիկայի էքստենսիվ զարգացումից ինտենսիվին անցնելու, արտադրահարաբերությունների ու տնտեսության կառավարման վերակառուցման հետ, որի համար իրականացվում են տնտեսական գիտափորձեր ու ռեֆորմներ:

Մյուս ընդհանուր ուղղությունը, որն օրգանապես կապված է առաջինի հետ, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումն է, մարդու իրավունքների ընդլայնումը, որն ապահովում է բոլոր աշխատավորների ներգրավումը հասարակական պրոբլեմների ակտիվ լուծմանը, և կոմկուսների ղեկավար դերի մեծացումը ինչպես նրա աղբյուրի՝ ժողովրդի վստահության ամրապնդմամբ, այնպես էլ, սոցիալիզմի կատարելագործման շահերից ելնելով, եղած հակասությունները ժամանակին լուծելու նրանց ունակության բարձրացմամբ: Երրորդ ընդհանուր ուղղությունը, որն անխզելիորեն կապված է մյուսների հետ, սոցիալիստական գաղափարախոսության տիրապետության ամրապնդմանը, սոցիալիստական հասարակության ակտիվ քաղաքացիների դաստիարակությանը նպատակաուղղված գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի կատարելագործումն է:

Ամերիկայի Միացյալ Նահանգների և ՆԱՏՕ-ի մյուս երկրների ագրեսիվ ուժերի ակտիվացման պայմաններում սոցիալիստական ընկերակցության երկրների կոմկուսները միահամուռ հավանություն տվեցին Վարշավայի պայմանագրի ժամկետի երկարաձգմանը, ինչպես նաև ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների նոր նախաձեռնություններին, որոնք նպատակամղված են սպառազինությունների և զինված ուժերի կրճատման վերաբերյալ բանակցությունների հաջողությանը, սուվերեն պետությունների ներքին գործերին չմիջամտելն ապահովելուն, միջազգային իրավահավասար համագործակցության զարգացմանը:

Նման ընդհանուր կուրս համատեղ մշակելու և իրականացնելու սոցիալիստական ընկերակցության երկրների փորձը թույլ է տալիս հավաստելու, որ բոլոր սոցիալիստական պետությունների համապատասխան քաղաքականության համաձայնեցումը կնպաստեր միջուկային պատերազմը կանխելուն: Դրան են ձգտում ՍՄԿԿ-ն և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների կոմկուսները: Սոցիալիստական մյուս երկրների հետ համագործակցության կարգավորումը, անշուշտ, կնպաստեր նրանցից յուրաքանչյուրի դիրքերի ամրապնդմանը և միջուկային պատերազմը կանխելուն:

Թեպետև նման օբյեկտիվ հնարավորությունները չեն իրականացված, արդեն 80-ական թթ. առաջին կեսին ակնհայտ դարձավ, որ «խաչակրաց արշավանքի» միջոցով իմպերիալիզմն ի վիճակի չէ հասնելու համաշխարհային սոցիալիզմի հեղինակազրկմանն ու վերացմանը: Նախ, սոցիալիստական ընկերակցությունն ապացուցեց իմպերիալիստական տերությունների ռազմաստրատեգիական գերազանցությունը թույլ չտալու իր կարողությունը: Երկրորդ, չնայած ռազմաստրատեգիական հավասարակշռությունը պահպանելու համար ուժերի լուրջ լարմանը, սոցիալիստական ընկերակցության երկրները չկրճատեցին իրենց սոցիալ-տնտեսական ծրագրերը և շարունակում են ընթանալ համաշխարհային սոցիալական առաջընթացի ավանգարդում: Երրորդ, նրանց եղբայրական օգնությունը նպաստեց ետ մղելու գաղափարաքաղաքական և տնտեսական հարձակումները, իմպերիալիստական տերությունների տարբերակված ճնշումը: Չորրորդ, շատ երկրների կոմունիստների ջանքերի շնորհիվ նշմարվեցին դրական փոփոխություններ սոցիալիստական ընկերակցության և այդ ընկերակցության մեջ չմտնող սոցիալիստական պետությունների հետ: Հինգերորդ, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության մի քանի այլ երկրների զարգացումը անհրաժեշտ դարձրեց և հնարավորություն ստեղծեց առաջադրելու որպես հերթական պատմական խնդիր՝ համաշխարհային առաջնության հասնելու աշխատանքի արտադրողականության ասպարեզում,



որը «վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 39, էջ 25):

Ակնհայտ է «համաշխարհային սոցիալիզմի ճգնաժամի» վերաբերյալ դրույթի սնանկությունը, որը հակակոմունիստները ճգնում են հիմնավորել սոցիալիստական առանձին երկրներում դրսևորվող ճգնաժամային երևույթներով: Քաջ հայտնի է, որ սոցիալիստական առանձին երկրներում արտահայտվող որոշ դժվարություններ հետևանք են նրանցում եղած հակասությունների սրման, որը ծնունդ է ոչ թե սոցիալիզմի սկզբունքների, որոնք անճգնաժամ զարգացման հնարավորություն են ընձեռում, այլ դրանց զանազան խախտումների, որն ակտիվորեն օգտագործում են սոցիալիզմի ներքին ու արտաքին հակառակորդները: Եթե արտադրության, հասարակության և իշխանության կառուցվածքի տարրերային փոփոխություններով այժմ արտահայտվող կապիտալիզմի խորացող ընդհանուր ճգնաժամը բխում է այդ հասարակարգի բուն սկզբունքներից, օրինաչափ է ու անդառնալի, ապա սոցիալիստական առանձին երկրների ճգնաժամերը ծագում են միայն սոցիալիզմի սկզբունքների խախտման հետևանքով, որը և օգտագործում են նրա թշնամիները, ու վկայում են նոր հասարակության կատարելագործման անհրաժեշտության մասին և նույնիսկ ի մի բերված ոչ մի կերպ չեն կարող գնահատվել որպես համաշխարհային սոցիալիզմի ճգնաժամ ու կասկածի տակ դնել նրա վեհ սկզբունքները, որոնց առինքնող ուժն անշեղորեն աճում է:

Սոցիալիզմի աճող հզորությունը, հսկայական հեղինակությունն ու ակտիվ միջազգային գործունեությունը կոմունիստները, հատկապես սոցիալիստական ընկերակցության երկրների կոմունիստները, նպատակամղում են միջուկային կործանումը կանխելուն: «Սոցիալիստական ընկերակցությունը,— ասված է ՍՄԿԿ ծրագրի խմբագրույթի նախագծում,— արդիականության ամենահեղինակավոր ուժն է, առանց որի չի կարող լուծվել համաշխարհային քաղաքականության ոչ մի հարց. դա երկրագնդի խաղաղության ամրակուռ պատվարն է, միջազգային հարաբերություններում առողջ, խաղաղ, դեմոկրատական հիմունքների ամենահետևողական պաշտպանը, գլխավոր խոչընդոտը իմպերիալիստական հետադիմության ճանապարհին»: Սոցիալիստական ընկերակցության դիրքերի ամրությունը, նրա ակտիվ արտաքին քաղաքականությունը, ինչպես և բոլոր առաջադեմ ուժերի ջանքերը, ուժեր, որոնց ավանգարդում հանդես են գալիս կոմունիստները, ապահովեցին Ժնևում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի բարձր ղեկավարների հանդիպման ժամանակ կարևոր պայմանավորվածությունների ձեռքբերումը, որոնք կարող են ելակետ դառնալ խաղաղության ամրապնդման գործում: Միացյալ Նահանգները համաձայնեցին, որ միջուկային պատերազմը երբեք չպետք է սանձազերծվի, նրանում չեն կարող լինել հաղթողներ, համաձայնեցին չձգտել ռազմական գերազանցության, շարունակել բանակցությունները սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման, միջուկային սպառազինության սահմանափակման ու կրճատման և տիեզերքում սպառազինությունների մրցավազքը կանխելու վերաբերյալ:

Միջուկային պատերազմը կանխելու համար մղվող պայքարում էական ներդրում ունեն բոլոր ոչ սոցիալիստական երկրների կոմունիստները: «Կոմունիստները պայքարում են բանվոր դասակարգի ինչպես մերձակա, այնպես էլ հեռանկարային նպատակների համար, բոլոր աշխատավորների շահերի համար, սոցիալական առաջադիմության, խաղաղության, զինաթափման և ընդհանուր անվտանգության համար»,— նշված է ՍՄԿԿ ծրագրի նախագծում: Լարվածության թուլացման պահպանումն ու խորացումը, համընդհանուր զինաթափման հասնելը նպաստում են, ինչպես վկայում է 70-ական թթ. փորձը, սոցիալական առաջընթացին, նեոգաղութատիրության վերացմանը, միջազգային հարաբերությունների դեմոկրատացմանը: 80-ական թթ. անհնարին եղավ հասնել լիցքաթափման պահպանմանն ու խորացմանը, առաջ ընթանալ զինաթափման ուղիով՝ առանց վճռական պայքարի հանուն սոցիալական առաջադիմության, ընդդեմ նեոգաղութատիրության, հանուն միջազգային հարաբերությունների դեմոկրատացման: Ակնհայտ է, որ լարվածության թուլացման ու զինաթափման, ինչպես և սոցիալական առաջընթացի ու միջազգային հա-

բաբերությունների դեմոկրատացման թշնամին ընդհանուր է՝ իմպերիալիզմի ակտիվացած առավել ագրեսիվ շրջանները, տարազգային կորպորացիաները և ռազմաարդյունաբերական կոմպլեքսը, կոսմոպոլիտական հետադիմությունը գլխավորող նորպահպանողականները։

Սոցիալ-տնտեսական զարգացման, պետական կառուցվածքի, գաղափարաքաղաքական իրավիճակի, աշխատավորական զանգվածների ակտիվության, կազմակերպվածության և գիտակցականության, ինչպես նաև կոմկուսների ուժի յուրահատկությամբ է պայմանավորված նրանց մշակած և իրականացվող քաղաքականության բազմազանությունն այդ երկրներում։ Բայց նրանց քաղաքականության բազմազանությամբ հանդերձ, 80-ական թթ. իրենց ստրատեգիան կատարելագործելու հարցում առկա են կարևոր ընդհանուր գծեր։ Նախ, ստրատեգիական խնդիրների շարքում առաջին տեղն է մղվում միջուկային կործանումը կանխելու, մարդկային հասարակությունը պահպանելու խնդիրը։ Երկրորդ, այդ երկրների կոմկուսները գլխավոր հարվածն ուղղում են ընդդեմ պետական-մոնոպոլիստական կապիտալի վերնախավը կազմող տարազգային կորպորացիաների և ռազմաարդյունաբերական կոմպլեքսի, ընդդեմ նրանց շահերի գլխավոր արտահայտչի՝ նորպահպանողականների և նրանց համախոհների՝ նեոֆաշիստներից մինչև զարգացող երկրների տեղական օլիգարխիան ու կրոնական մոլեռանդությունը, ընդդեմ միջուկային պատերազմի աճած վտանգի ակունքի։ Երրորդ, տարազգային կորպորացիաների և ռազմաստրատեգիական կոմպլեքսի, նորպահպանողականների և նրանց համախոհների դեմ մղվող պայքարում ընդարձակվում է հավանական դաշնակիցների շրջանակը՝ ամենից առաջ հանուն միջուկային պատերազմի կանխման մշակվում են ամենալայն քաղաքական միությունների կոնցեպցիաները։ Չորրորդ, մյուս բոլոր համընդհանուր և ազգային պրոբլեմների՝ սոցիալական առաջընթացի, նեոգաղութատիրության վերացման, միջազգային հարաբերությունների դեմոկրատացման և սոցիալիզմին անցնելու ուղիների մշակումը տեղի է ունենում միջուկային կործանումը կանխելու պրոբլեմի հետ օրգանական կապի մեջ։ Վերջապես, գլխավոր համընդհանուր պրոբլեմի՝ միջուկային զենքի կանխման նշանակության մեծացումը, ինչպես նաև բոլոր երկրների զարգացման ինտերնացիոնալացման արագացումը պահանջեց կոմկուսների ինտերնացիոնալ փոխգործողության ամրապնդում՝ որպես յուրաքանչյուրի ստրատեգիայի կարևոր մաս։

Այս ամենը պայմանավորեց ոչ սոցիալիստական երկրների կոմկուսների որոշակի վերակառուցում, տակտիկայի, ողջ գործունեության կատարելացում. սոցիալ-ռեֆորմիստների հետ համագործակցության կոնկրետ ձևերի, զանազան գաղափարաքաղաքական կողմնորոշման արհմիությունների, խաղաղության շարժման, պացիֆիստների, նոր սոցիալական շարժումների, հավատացյալների հետ փոխգործողության փնտրում։

80-ական թթ. նորպահպանողականների և նրանց դաշնակիցների հասցրած ծանր հարվածների հետևանքով մի շարք երկրներում կոմունիստները թեպետև կորուստներ կրեցին, սակայն կարողացան ամրապնդել իրենց դիրքերը և մասսաների շրջանում ընդլայնել ազդեցությունը Հունաստանում ու Պորտուգալիայում, Լատինական Ամերիկայի և մի քանի այլ երկրներում։ Նման պայմաններում նորպահպանողականների և նրանց դաշնակիցների համար համընդհանուր հարձակումն ուժից վեր էր։ Դա հաստատվում է առաջավոր ուժերի հակահարձակմամբ Լատինական Ամերիկայում և նրանց կայունությամբ մի շարք այլ շրջաններում։

Միջուկային աղետը կանխելու համար հատուկ նշանակություն են ձեռք բերել ինտերնացիոնալ փոխգործողության ամրապնդումը, բոլոր երկրների կոմունիստների համախմբումը։ «Աճում է,— ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրի խմբագրության նախագծում,— պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիստների ընկերական համերաշխության նշանակությունը»։ 80-ական թթ. նման փոխգործողությունը՝ հիմնված պրոլետարական ինտերնացիոնալիզմի վրա, պահպանելով 50-ական թթ. վերջերից ընդհանուր ճանաչում գտած կոմկուսների միջև փոխհարաբերությունների նորմերը (յուրաքանչյուր կոմկուսի



ինքնուրույնությունը, բոլորի իրավահավասարությունը, ներքին գործերին չմիջամտելը, ընկերական փոխօգնությունը), լայնորեն զարգացավ։ Այդ փոխգործողությունն իրականացվում է կոմկուսների ղեկավարների հանդիպումների, ռեգիոնալ խորհրդակցությունների, կոնֆերանսների անցկացման, պատվիրակությունների փոխանակման, «Проблемы мира и социализма» հանդեսի աշխատանքների և այլ միջոցառումներին համատեղ մասնակցելու միջոցով։

Փորձն ապացուցել է կոմկուսների համագործակցության զանազան ձևերի արդյունավետությունը, այնպես և դրանց կատարելագործման ու ամրապնդման անհրաժեշտությունը։ Դրա հետ մեկտեղ պետք է ընդունել, որ կոմկուսների ինտերնացիոնալ փոխգործողության զարգացումը դեռևս ետ է մնում օբյեկտիվ պահանջմունքներից, որոնք պայմանավորված են միջուկային պատերազմը կանխելու համար բոլոր ուժերի մոբիլիզացման և համախմբման անհրաժեշտությամբ։ Այդ փոխգործողության առանձին օղակներ, հատկապես Եվրոպայում և Ասիայում, ավելի թույլ են նրանց հակադրվող նորպահպանողականների և վերջիններիս համախոհների փոխգործողության օղակներից։ Մինչդեռ կոմունիստների խոր ինտերնացիոնալիզմը նպաստում է կազմակերպելու ամուր ինտերնացիոնալ փոխգործողություն։ Այդ առավելության օգտագործմանն ամենից առաջ խանգարում են հակակոմունիստների չարամիտ հարձակումները, որոնք այժմ առաջ են քաշել «համաշխարհային կոմունիստական շարժման քայքայման» վերաբերյալ ստահոդ դրույթը և ձգտում են ուռճացնել կոմկուսների միջև եղած տարաձայնությունները, նրանց հակադրել միմյանց, քաջալերել ռևիզիոնիզմն ու ազգայնական միտումները։ Այդ իսկ պատճառով հակակոմունիզմի դեմ վճռական պայքարը բոլոր երկրների կոմունիստների ինտերնացիոնալ փոխգործողության կարևոր պայմանն է։

Կոմունիստների միջև փոխգործողությունը էապես դժվարանում է որոշ կոմկուսներում եղած աջ և ձախ ռևիզիոնիզմի, ազգայնական տրամադրությունների, պրոլետարական ինտերնացիոնալիզմը խեղաթյուրելու, նրանից հրաժարվելու և գերատիրական նկրտումների պատճառով։

Ակնհայտ է, որ կոմունիստական շարժման մեջ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից ամեն կարգի շեղումների դեմ պայքարը պետք է մղվի կոմկուսների միջև փոխհարաբերությունների նորմերը պահպանելու և մասսաների, կուսակցությունների սեփական փորձը հաշվի առնելու պայմանով։ Հենց այդպիսի գիծ են վարում ՍՄԿԿ-ն և եղբայրական կուսակցությունները։ Դա նպաստում է կոմկուսների միջև փոխգործողության զարգացմանը, մարքսիզմ-լենինիզմի հիման վրա համաշխարհային կոմունիստական շարժման համախմբմանը և, առաջին հերթին, միջուկային աղետի կանխմանը։

Կոմունիստների ինտերնացիոնալ փոխգործողության ամրապնդումը միջուկային վտանգը կանխելու օգտին հանդես եկող հիմնական ուժերի փոխգործողությունը նրանց կողմից կոորդինացնելու, աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի կողմից ինտերնացիոնալիզմն արդյունավետ կերպով իրականացնելու կարևոր պայմանն է։ Այդ բանին մեծապես կնպաստի ՍՄԿԿ XXVII համագումարը։

Մեր կուսակցության ծրագրի նոր խմբագրության նախագծում, որը բոլոր կոմունիստների, ՍՍՀՄ բոլոր աշխատավորների լայն քննարկումից հետո կներկայացվի ՍՄԿԿ XXVII համագումարի քննարկմանը և հաստատմանը, կայուն խաղաղության և զինաթափման համար մղվող պայքարին առաջնակարգ նշանակություն է տրվում։ «Հօգուտ մարդկության,— շեշտված է ծրագրի նախագծում,— հանուն ներկա և գալիք սերունդների բարօրության ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը պաշտպանում են այնպիսի միջոցառումների կոնստրուկտիվ լայն ծրագիր, որոնք ուղղված են սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը և զինաթափմանը, խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովմանը»։

Ծրագրի նախագծի այս և մյուս դրույթները վկայում են հանուն խաղաղության և զինաթափման, ողջ մարդկության ճակատագրի համար Լենինի կուսակցության պատասխանատվության ու դերի մեծացման մասին։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԿՅԱՆՔ

**(Ա. Ի. Միկոյանի ծննդյան 90-ամյակի առթիվ)**



ԿԱՆ ՄԱՐԴԻԿ, որոնց կենսագրությունը միահյուսվում է մեր երկրի, կուսակցության, սովետական բազմազգ ժողովրդի պատմությանը: Ուստի մտովին վերարտադրել նրանց կյանքը՝ նշանակում է անխուսափելիորեն հետևել կուսակցության ու պետության պատմության կարևորագույն փուլերին. Հոկտեմբերյան հեղափոխություն, քաղաքացիական պատերազմ, սոցիալիստական շինարարության սկիզբ, ինդուստրացում և կոլեկտիվացում, սոցիալիզմի հաղթանակ, Հայրենական մեծ պատերազմ, ետպատերազմյան վերականգնում և երկրի նոր, դինամիկ զարգացում...

Հենց այդպիսին է կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Անաստաս Իվանովիչ Միկոյանի կենսագրությունը: Նրա կյանքի ուղին անցել է այնպիսի պայմաններում, երբ նախապատրաստվեց ու իրականացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, ստեղծվեց, բազմաթիվ թշնամիներից պաշտպանվեց, հասակ առավ և ամրապնդվեց սոցիալիզմը: Անաստաս Միկոյանն այն մարդկանցից էր, ովքեր կոմունիստական կուսակցության և սովետական պետության ղեկավարության կազմում նպաստեցին Ռուսաստանը հետամնաց, կիսագրագետ և կախյալ վիճակից վերածելու հզոր տնտեսական պոտենցիալով և վիթխարի քաղաքական հեղինակությամբ, առաջավոր գիտությամբ և մշակույթով սոցիալիստական երկրի, որն այսօր դարձել է խաղաղության և առաջադիմության դրոշակակիր:

Անաստաս Միկոյանը ծնվել և հասակ է առել Սանահինի գյուղում, որը փռված է հնագույն Հայաստանի գողտրիկ լեռնալանջերից մեկում: Մանկությունն անցել է կարիքի և հոգսերի մեջ:

Ուսման, գիտելիքների ծարավը, որը խրախուսում էր նրա հայրը, Անաստասին բերեց Թիֆլիսի Ներսիսյան դպրոց: Այստեղ նա տարվեց ընթերցանությամբ: Նրա կարդացած գրքերի թվում էին Վ. Ի. Լենինի **Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Ինչ անել,** Գ. Վ. Պլեխանովի աշխատությունները, Կ. Մարքսի **Կապիտալը:**

Թիֆլիսում սովորելու տարիներին նա ակտիվորեն հաղորդակցվում է հեղափոխական աշխատանքներին և 1915 թ. ընդունվում բոլշևիկյան կուսակցության շարքերը:



Փետրվարյան հեղափոխությունից հետո Ա. Ի. Միկոյանը մեկնում է Բաքու բանվոր նավթագործների շրջանում քաղաքական աշխատանք կատարելու համար: Բաքվում, որը, Մաքսիմ Գորկու արտահայտությամբ, կանգնած էր «ոսկե հատակի վրա» և իր հավասարը չուներ աղքատությամբ, բազմալեզու բանվորների խայտաբղետությամբ ու սոցիալական սուր հակապատկերներով, իրադրությունը խիստ բարդ էր: Բոլշևիկների համար մեծ դժվարություններ էին հարուցում ազգային հակամարտությունները, որ մշտապես հրահրում էին հայկական և ադրբեջանական բուրժուական նացիոնալիստները: Գործունեության պայմանների բարդությունն առանձնապես խորանում էր նրանով, որ 1917 թ. փետրվարից հետո քաղաքական կյանքի հորձանուտը հեղեղվեց հազարավոր ու տասնյակ հազարավոր բանվորների հոսանքով, որոնք քաղաքականապես կոփված չէին: Նրանց համար դժվար էր կողմնորոշվել քաղաքում գործող բազմերանգ կուսակցությունների և խմբերի մեջ: Աշխատավորների լայն զանգվածները եղան անմիջական վկաները, ապա և մասնակիցները այն պայքարի, որ մղում էին բոլշևիկները, նրանց հարող գումերիստներն ու սպաշերաստաներ մենշևիկների, էսէռների, դաշնակցականների և մուսավաթականների դեմ:

Բոլշևիկները վիթխարի, համբերատար աշխատանք էին տանում մանրբուրժուական և նացիոնալիստական կուսակցությունների երկերեսանի, արտաքնապես գերհեղափոխական գործունեությունը մերկացնելու համար: Այդ աշխատանքին նվիրվեց նաև Ա. Ի. Միկոյանը: Ամեն օր, վաղ առավոտից մինչև ուշ գիշեր նա չէր հեռանում Բաքվի Սաբունչիի, Բալախանի, Զաբրաթի, Բիբի-Էյբաթի նավթահանքերից: Յուրաքանչյուր ելույթով ու վիճաբանությամբ հարստանում էր նրա քաղաքական փորձը, կոփվում բոլշևիկյան խառնվածքը: Անաստաս Իվանովիչը դառնում է Բաքվի բոլշևիկների, ապա և Անդրկովկասյան կազմակերպության ղեկավարներից մեկը: Լինելով ՌՍԴ(բ)Կ Բաքվի կոմիտեի նախագահության անդամ, նա կուսակցականմասսայական մեծ աշխատանք է տանում, խմբագրում է բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» (հայերեն) թերթը, համագործակցում մամուլի մյուս օրգանների հետ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո Բաքվում իշխանությունն անցավ աշխատավորների ձեռքը: Կատաղի պայքար էր մղվում մենշևիկների, աջ էսէռների, մուսավաթականների, դաշնակցականների դեմ: Բանվորների և զինվորների դեպուտատների սովետը ձեռնամուխ եղավ ժողովրդական իշխանության համար զինված հենարան ստեղծելու խնդրին, որի անհրաժեշտությունը շուտով զգացվեց: 1918 թ. մարտին ադրբեջանական նացիոնալիստները ապստամբություն բարձրացրին սովետի դեմ: Խռովությունը ջախջախվեց Բաքվի սովետի զինված ուժերի կողմից: Երեք օր տևած փողոցային մարտերից մեկի ժամանակ Ա. Միկոյանը վիրավորվեց:

Ապաքինվելուց հետո նա նշանակվում է Բաքվի սովետի «Իզվեստիա» թերթի խմբագիր, ամենագործուն մասնակցություն ունենում քաղաքում հեղափոխական վերափոխումների իրականացման, հատկապես արդյունաբերության և բանկերի ազգայնացման, նավթարդյունաբերողների կապիտալի բռնագրավման գործում:

Պատմական փորձը վկայում է, որ շահագործողների իշխանությունը տապալելուց հետո վերջիններս կատաղի դիմադրություն են ցույց տալիս, անզիջում պայքար սանձազերծում հեղափոխության դեմ: Հակահեղափոխությունը առաջինն է զենքի դիմում: Եվ այդպես, Հոկտեմբերյան հեղափոխության կողմից տապալված շահագործող դասակարգերը Ռուսաստանում քաղաքացիական պատերազմ սկսեցին. նրանց օգնում էին օտարերկրյա իմպերիալիստները: Բանվորագյուղացիական երիտասարդ հանրապետությունը 1918 թ. հայտնվեց կրակե օղակում:

Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման և ապա նրա պաշտպանության համար մղված արտակարգ ծանր պայքարում Ա. Ի. Միկոյանը բոլշևիկյան հիանալի մարտիկի համբավ ձեռք բերեց՝ դրսևորելով անձնական խիզախություն և արիություն: Բաքվում, թուրքական-մուսավաթական զորքերի տնօրինության շրջանում, նա գործում էր ընդհատակում: Միկոյանն իր մարտական ընկերների հետ մեկտեղ հմտորեն կազմակերպեց բանտարկված կոմիսարների փախուստը: Այնուհետև, միայն պատահականորեն նրան և մի քանի ընկերների հաջողվեց խուսափել Բաքվի 26 կոմիսարների հետ զոհվելուց, որոնք ընկան անգլիական ինտերվենտների և նրանց մենշևիկյան կամակատարների ձեռքով:

Անաստաս Միկոյանը կրկին ընդհատակյին աշխատանքում է՝ արդեն անգլիա-

1941—1942 թթ. բլոկադայի առաջին ձմռանը առանձնապես ծանր տառապանքներ բաժին ընկան լենինգրադցիներին: Քաղաքի հարյուր հազարավոր խաղաղ բնակիչներ զոհվեցին չդադարող ռմբակոծությունից, սովից ու ցրտից: Բնակիչներից յուրաքանչյուրը օրական ստանում էր 125—250 գրամ հաց, ոչ ավելի:

*«...Բլոկադային հացը հարյուր քսանհինգ գրամ,*
*Կիսովի էր հասնում՝ կրակով ու արյամբ...»*

— գրել է քաղաքի պաշտպանության մասնակից, բանաստեղծուհի Օլգա Բերգոլցը «Լենինգրադյան պոեմում»:

Ա. Ի. Միկոյանն անմիջական մասնակից է լենինգրադցիների համար թեկուզ այդ հարյուր քսանհինգ գրամ հացի ապահովմանը: Նա շատ բան է արել նաև քաղաքի բնակիչների էվակուացման համար, որի շնորհիվ պահպանվեց հազարավոր մարդկանց կյանք:

Լենինգրադը ծանր վիճակից դուրս բերելու ուղիների որոնումը հանգեցրեց Լադոգա լճի վրայով սառցե ճանապարհ բացելու գաղափարին: Արտասովոր ու ֆանտաստիկ այդ գաղափարը շատերին անիրականանալի էր թվում: Անաստաս Իվանովիչը, մանրակրկիտ ուսումնասիրելով սառցե ճանապարհի վերաբերյալ Լենինգրադի ռազմաճակատի ռազմական խորհրդի առաջարկությունները, պաշտպանեց դրանք: «Կյանքի ճանապարհը», ինչպես այն անվանեցին լենինգրադցիները, սկսեց գործել: Այն դարձավ ևս մեկ թել, որով քաղաքը կապվում էր ամբողջ երկրի հետ: «Կյանքի ճանապարհը» օգնեց Լենինգրադին՝ դիմանալու:

Ռազմաճակատն ու թիկունքը պարենով և ամեն անհրաժեշտ ապրանքներով ապահովելու բազմաբեղուն գործունեության համար Ա. Ի. Միկոյանին 1943 թ. շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչում:

Սովետական ժողովրդի մեծ հաղթանակով ավարտվեց մարդկության պատմության մեջ չտեսնված այդ պատերազմը: Սոցիալիզմի թշնամիները հույսով էին, որ մեր երկրին պատճառած վնասները և ավերածությունները նրան կդատապարտեն հետամնացության և Արևմուտքից կախվածության: Սակայն այս անգամ ևս նրանք սխալվեցին: Ահեղ փորձությանը դիմացած սովետական երկիրը ձեռնամուխ եղավ պատերազմի պատճառած ահավոր վերքերի բուժմանը, խաղաղ կյանքի կարգավորմանը, այն ամենի վերականգնմանը, ինչ ավերվել էր, թալանվել, հափշտակվել զավթիչների կողմից:

Դեռևս 1943 թվականին, երբ հաղթանակը դեռ շատ հեռու էր, Ա. Ի. Միկոյանը, իր նախկին բոլոր պարտականությունների հետ մեկտեղ, սկսեց կատարել նաև նոր պարտականություններ՝ որպես ֆաշիստական օկուպացիայից ազատագրված շրջանների ժողովրդական տնտեսության վերականգնման կոմիտեի անդամ: Այդ աշխատանքով նա զբաղվեց մինչև 1946 թ.:

Նույն թվականին նա նշանակվեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ և միաժամանակ արտաքին առևտրի, իսկ 1953—1955 թթ. ՍՍՀՄ առևտրի մինիստր: 1955 թ. Անաստաս Իվանովիչը ստանձնում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալի պոստը:

1964 թվականին Ա. Ի. Միկոյանն ընտրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ: Լինելով ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի և նախագահության անդամի պոստերում՝ նա մեծ ուշադրություն էր նվիրում պետական շինարարության հարցերին, լենինյան ազգային քաղաքականության իրականացմանը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը, Սովետական Միության արտաքին քաղաքական դիրքերի ամրապնդմանը:

1955—1964 թթ. Ա. Ի. Միկոյանը, որպես ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, ակտիվորեն մասնակցել է լենինյան արտաքին քաղաքականության իրականացմանը, բազմիցս մեկնել արտասահմանյան ուղևորությունների, արժանավայել ձևով ներկայացրել սովետական պետությունը:

«Սառը պատերազմի» այդ ժամանակաշրջանում Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, իրականացնելով ՍՄԿԿ XX, XXI, XXII համագումարների մշակած արտաքին քաղաքական կուրսը, ամեն ինչ անում էր ամրապնդելու համաշխարհային սոցիալիզմի դիրքերը, պաշտպանելու հեղափոխական և ազգային-



ազատագրական շարժումները, ակտիվորեն դիմագրավելու իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումներին: ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը անշեղորեն վարում էին տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության կուրսը, հետևողականորեն ձգտում միջազգային խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդմանը: Ա. Ի. Միկոյանի այցելությունները Բուլղարիա, Հունգարիա, ԳԴՀ, Մոնղոլիա, Ռումինիա, Չեխոսլովակիա նպաստեցին բարեկամության և փոխադարձ օգնության հարաբերությունների զարգացմանը ՍՍՀՄ-ի և այդ երկրների միջև, սոցիալիստական ամբողջ համագործակցության հետագա ամրապնդմանը:

Ա. Ի. Միկոյանի պատասխանատու միսիան ԱՄՆ և Կուբա 1962 թ. նոյեմբերին ծանրակշիռ ավանդ ներդրեց Կարիբյան ճգնաժամի վերացման գործում, որը հղի էր անողոքելի ծանր հետևանքներով: Նրա այցելությունները գաղութային լծից ազատագրված և ինքնուրույն զարգացման ուղին բռնած Ասիայի և Աֆրիկայի երկրները մեծ դեր խաղացին նրանց բարոյաքաղաքական, դիվանագիտական ու տնտեսական օգնություն ցույց տալու, սովետական պետության միջազգային հեղինակությունն ամրապնդելու գործում: Նրա այցելությունները Հնդկաստան, հանդիպումները Ջավահարլալ Ներուի հետ ամուր հիմքեր դրեցին ՍՍՀՄ-ի և ասիական այդ մեծ տերության բարեկամական հարաբերությունների զարգացման համար: Միկոյանի այցերը զարգացած կապիտալիստական երկրներ նպաստեցին այդ պետությունների հետ ՍՍՀՄ-ի տնտեսական և այլ կապերի ընդլայնմանը, ծառայեցին միջազգային լարվածության թուլացման գործին:

Ա. Ի. Միկոյանը մշտապես վայելել է կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի մեծ վստահությունը: Սկսած X կուսհամագումարից, ընդհուպ մինչև XXIV համագումար նա եղել է ՍՄԿԿ բոլոր համաժողովների պատգամավոր: 1922 թ. Ա. Ի. Միկոյանը կուսակցության Կենտկոմի անդամության թեկնածու էր, 1923—1976 թթ.՝ Կենտկոմի անդամ, 1923 թվականից՝ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, 1935—1966 թթ. ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի (նախագահության) անդամ: Նա եղել է ՌՍՖՍՀ և ՍՍՀՄ Կենտգործկոմների անդամ, առաջինից մինչև ութերորդ գումարման ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ: Կուսակցության և պետության հանդեպ ունեցած ծառայությունների համար արժանացել է Լենինի վեց, Հոկտեմբերյան հեղափոխության և Կարմիր դրոշի շքանշանների: Իր բովանդակալից և հետաքրքիր կյանքի վերջին տարիներին Ա. Ի. Միկոյանը (նա վախճանվել է 1978 թ.) արդյունավետ գրական աշխատանք էր կատարում: Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ նա պատրաստեց և լույս ընծայեց **Մտքեր և հիշողություններ Լենինի մասին** գիրքը, ՍՍՀՄ-ի կեսդարյա հոբելյանի կապակցությամբ՝ **Սովետական Միությունը հիսուն տարեկան է**, 1971 թ.՝ **Պայքարի ճանապարհով**, 1975 թ.՝ **Քսանական թվականների սկզբներին** հուշագրքերը:

Ա. Ի. Միկոյանը նաև Հայրենականի մեծ պատերազմի վերաբերյալ արժեքավոր հուշագրքի հեղինակ է, որը հրատարակվել է «Военно-исторический журнал»-ում:

Անաստաս Իվանովիչի հուշագրություններում պատմվում է կուսակցության և երկրի պատմության բազմաթիվ իրադարձությունների մասին, որոնց մասնակիցն է եղել ինքը: Առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում Վ. Ի. Լենինի մասին նրա հուշերը, իր հետ միասին աշխատած ու ժողովրդի պայծառ ապագայի համար պայքարած հիանալի մարդկանց մասին հիշողությունները:

Նշելով Անաստաս Իվանովիչ Միկոյանի ծննդյան 90-ամյակը, մենք նրան մեծարում ենք որպես կուսակցության և պետության ականավոր գործչի, բոլշևիկ-լենինյանի, որն իր մեջ մարմնավորել է կոմունիստ-ինտերնացիոնալիստի հիանալի գծերը: Նրա ամբողջ կյանքը վառ օրինակ է այն բանի, թե ինչի է ընդունակ մարդը, որը գիտակցաբար, պատանի հասակից իր բոլոր ունակությունները, տաղանդը, եռանդն ու գիտելիքները նվիրաբերել է լենինյան կուսակցության գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարին:

**Մ. ՄԺԵԴԼՈՎ**
**ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, պրոֆեսոր**

Գաղափարախոսական աշխատանքի

պրակտիկա

# ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ԼՈՒԾԵԼՈՎ ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ

**Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

*ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, հատկապես Վ. Ի. Լենինի աշխատություններում մշակված է մասսաների աթեիստական դաստիարակության համակողմանի ծրագիրը, որի իրականացումը մեր երկրի կուլտուրական վերափոխությունների անխզելի մասն է։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր կրոնական նախապաշարմունքների քննադատությունը վարել հետևողական մատերիալիստական դիրքերից, նշում, որ գիտական աշխարհըմբռնումը, մարտնչող մատերիալիզմն անհնար են առանց մարտնչող աթեիզմի։ Աթեիստական դաստիարակության հաջողության գրավականը նա համարում էր կրոնի դեմ մղվող պայքարի գիտականությունը՝ այն դիտելով իբրև համակուսակցական գործ, կուսակցական աշխատանքի ոլորտներից մեկը։*

*Լենինը պահանջում էր կրոնի դեմ մղվող պայքարը ենթարկել երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրներին։ Նա վճռականորեն հանդես էր գալիս աթեիզմի պրոպագանդայի այնպիսի մեթոդների և ձևերի դեմ, որոնք վիրավորում էին հավատացյալների զգացմունքները։ Առաջնորդն զգուշացնում էր, որ միաժամանակ անհրաժեշտ է խափանել կրոնի դեմ մղվող գաղափարախոսական պայքարը թուլացնելու փորձերը, անհաշտությամբ վերաբերվել կրոնական նախապաշարմունքներին, կոմունիստներին դաստիարակել գիտական աթեիզմի ոգով։*

*Կենսագործելով մասսաների աթեիստական դաստիարակության լենինյան ծրագիրը՝ ՍՄԿԿ-ն հետևողականորեն հանդես է գալիս ինչպես կրոնի հանդեպ ցուցաբերվող հաշտվողականության, այնպես էլ նրա դեմ մղվող պայքարում վարչարարական մեթոդներ գործադրելու դեմ։ Կուսակցությունը հակակրոնական պրոպագանդա վարելու բազմազան ձևեր ու միջոցներ է մշակել՝ հաշվի առնելով կոնկրետ իրադրության փոփոխությունները, աշխատավոր լայն մասսաների պահանջները, նրանց համակել կրոնի հանդեպ քննադատական վերաբերմունքով։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. հոկտեմբերյան պլենումի հավանությանն արժանացած և համակուսակցական, համաժողովրդական քննարկման բովով անցած՝ կուսակցության ծրագրի նոր խմբագրության նախագծում գիտականորեն հիմնավորված են աթեիստական դաստիարակության կուսակցական ղեկավարման կատարելագործման ստրատեգիական ուղղությունները։ ՍՄԿԿ XXVII համագումարի քննարկմանն ու հաստատմանը ներկայացվող պատմական այդ փաստաթղթում աթեիստական դաստիարակությունը դիտվում է գաղափարադաստիարակչական աշխատանքի բնագավառի կարևորագույն խնդիրներից մեկը։ «Հանդես գալով խղճի ազատության սահմանադրական երաշխիքների անշեղ կատարման օգտին,— ասված է նախագծում,— կուսակցությունը դատապարտում է կրոնը ի վնաս հասարակության և անհատի շահերին օգտագործելու փորձերը։ Կրոնական վերապրուկների հաղթահարման ճշմարիտ*



*ուղին է մարդկանց աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացումը, նրանց լուսավորումը, սովետական նոր ծեսերի ստեղծումն ու լայն տարածումը»։*

*Կրոնի ազդեցության թուլացման առումով մեծ դեր ունեն կատարելու նոր, սոցիալիստական տոների և ծիսակարգերի արմատավորումը, առաջադեմ ավանդույթների հիման վրա իրականացվող միջոցառումները։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1985 թվականի հունվարյան պլենումը, քննարկելով «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման ասպարեզում կուսակցական կազմակերպության խնդիրները, նշեց, որ դեռևս շատ անելիքներ կան աթեիստական աշխատանքի հետագա բարելավման, դրա կուսակցական ղեկավարման կատարելագործման բնագավառում։ Վերջին ժամանակներս հանրապետությունում նկատվող պաշտամունքային պրակտիկայի որոշ ակտիվացումը, ինչպես նշվեց պլենումում, հիմնականում հետևանք է ինքնահանգստացման, այն կեղծ մտայնության, թե դա իբր սոսկ անմեղ տուրք է ավանդույթներին։*

*Հայկական ՍՍՀ-ում բնակչության աթեիստական դաստիարակության կուսակցական ղեկավարումն ուժեղացնելու, այդ բնագավառում կուտակված աշխատանքի դրական փորձն ընդհանրացնելու, հանձնարարականներ մշակելու տեսանկյունից կարևոր դեր խաղաց ընթացիկ տարվա հուլիսին կազմակերպված հանրապետական գիտագործնական կոնֆերանսը։ Այստեղ նշվեցին հանրապետության մի շարք քաղաքներում ու շրջաններում բնակչության աթեիստական դաստիարակության, գիտաաթեիստական պրոպագանդայի կուսակցական ղեկավարման գործում նկատվող տեղաշարժերը։ Ուսանելի փորձ է կուտակված, օրինակ, ՀԿԿ Էջմիածնի շրջկոմում, շրջանի կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում։ Շրջանային կոմիտեն ձգտում է գիտաաթեիստական դաստիարակությունը սերտորեն կապակցել դաստիարակչական աշխատանքի մյուս ուղղությունների՝ գաղափարական-քաղաքական, աշխատանքային, բարոյական, հայրենասիրական, ինտերնացիոնալիստական, իրավական, գեղագիտական դաստիարակության խնդիրների հետ։*

*Էջմիածնում գիտաաթեիստական պրոպագանդան կազմակերպելու գործում հաշվի են առնվում շրջանի առանձնահատկությունները։ Շրջանը կրոնական տեսակետից յուրահատուկ է։ Այստեղ է գտնվում Ամենայն Հայոց կաթողիկոսությունը։ Էջմիածնի եկեղեցիներում կատարվում են զգալի թվով պսակադրություններ, կնունքներ, կրոնական այլ ծիսակատարություններ։ Եկեղեցիների առկայությունը, բնակչության կազմում հայրենադարձների զգալի թիվը, զբոսաշրջիկների մշտական հոսքը և այլ հանգամանքներ շրջանը որակում են որպես ակտիվ կրոնական գոտի։*

*ՀԿԿ Էջմիածնի շրջկոմը, օգտագործելով գաղափարախոսական աշխատանքի գործուն միջոցները, բավականաչափ ընդլայնել է աթեիստական դաստիարակության ոլորտը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումից հետո շրջկոմի բյուրոն չորս անգամ անդրադարձել է գիտաաթեիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքի վիճակին, ձեռնարկել համալիր միջոցառումներ գաղափարական դաստիարակության այդ կարևոր օղակում աշխատանքի ոճի և մեթոդների կատարելագործման համար։*

*Շրջկոմի բյուրոն, 1985 թ. փետրվարին քննարկելով Այգեշատ և Գայ գյուղերում գիտաաթեիստական դաստիարակության վիճակը, արձանագրել է, որ ձեռնարկված միջոցների շնորհիվ այդ գյուղերում ուժեղացել է բնակչության աթեիստական դաստիարակության կուսակցական ղեկավարումը։ Պարբերաբար կարդացվում են գիտաաթեիստական թեմաներով դասախոսություններ, կազմակերպվում զրույց-զեկուցումներ, բանավեճեր, առանձնակի ուշադրություն է նվիրվում աթեիստական դաստիարակությանը նպաստող գիտա-*

ղական ագիտացիայի կազմակերպմանը, բարելավվել է սոցիալիստական նոր ծեսերի արմատավորման աշխատանքը:

Բյուրոն միաժամանակ նշել է, որ առանձին կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններ պարբերաբար չեն քննարկում գիտաաթեիստական դաստիարակությանը վերաբերող հարցեր, հետևողական աշխատանք չեն տանում բնակչության շրջանում սոցիալիստական ծեսերը խորությամբ արմատավորելու համար: Որոշմամբ հանձնարարվեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ մշակել գիտաաթեիստական դաստիարակության միջոցառումների հեռանկարային պլաններ, աթեիստական թեմաներով դասախոսությունների ընթացքում լայնորեն օգտագործել համոզման մեթոդը, մասսայական-քաղաքական դաստիարակության նոր ձևեր, դրանք զուգակցել հավատացյալների շրջանում տարվող անհատական դաստիարակչական աշխատանքի հետ, բարելավել դպրոցներում կատարվող գիտաաթեիստական պրոպագանդան, ընդլայնել դասախոսների կազմը, լիովին բացահայտել բախտագուշակների գործունեության սնանկությունը:

Շրջկոմի բյուրոն 1985 թ. ապրիլին անդրադարձավ շրջանի բնակչության աթեիստական դաստիարակության վիճակի և այն ուժեղացնելու միջոցառումների իրականացման խնդրին: Նշվեց, որ սկզբնական կուսկազմակերպությունները նկատելիորեն բարելավել են բնակչության աթեիստական դաստիարակության աշխատանքը: Դրան նպաստել են գիտատեսական և գիտագործնական կոնֆերանսները, դասախոսությունները, զրույց-զեկուցումները, սոցիալիստական տոնախմբություններն ու մասսայական միջոցառումները:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լույսի ներքո կատարված աշխատանքի վերլուծությունը ցույց տվեց, որ այդ գործում դեռևս լուրջ թերություններ կան: Առանձին կուսկազմակերպություններ (Տարոնիկի, Այգեշատի, Գեղակերտի, Փարաքարի, Գայի) արդյունավետ անհատական աշխատանք չեն տանում կրոնապաշտությանը տուրք տվող անձանց ու նրանց ընտանիքների հետ: Սկզբնական կուսկազմակերպությունների զգալի մասում անհրաժեշտ արդյունավետությամբ չեն գործում աթեիստական դաստիարակության խորհուրդները, այդ աշխատանքի կազմակերպիչները, աթեիստ-ագիտատորները:

Շրջկոմի բյուրոն քննարկված հարցի վերաբերյալ ընդունած ծավալուն որոշմամբ հանձնարարեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ պարբերաբար ուսումնասիրել կրոնական իրադրությունը, ելնելով սոցիոլոգիական հետազոտությունների նյութերից, կատարել աթեիստական աշխատանքի ընթացիկ և հեռանկարանային պլանավորում, ապահովել աթեիստական դաստիարակության սերտ միասնությունը կազմակերպչական և գաղափարաքաղաքական գործունեության հետ:

Անհրաժեշտ համարվեց կուսկազմակերպություններում հարձակողական աթեիստական պրոպագանդա մղել, այն ճշտորեն զուգակցել հակապրոպագանդայի խնդիրների հետ, ակտիվացնել կրոնական նախապաշարումներին տուրք տվող անձանց և նրանց ընտանիքների հետ տարվող անհատական աշխատանքը: Պահանջվեց բարձրացնել գիտաաթեիստական-դասախոսական պրոպագանդայի գաղափարական մակարդակը և համոզչականությունը, խստորեն հաշվի առնել տարբեր լսարանների առանձնահատկությունները, հայ ժողովրդի պատմության և կուլտուրայի բնագավառում եկեղեցու դերի գնահատման նկատմամբ հանդես բերել հստակ դասակարգային մոտեցում:

Գիտաաթեիստական դաստիարակության կազմակերպման դերը բարձրացնելու, այդ գործում շրջանի բոլոր հիմնարկությունների, կազմակերպությունների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ջանքերի կոորդինացումը բարելավելու, լավագույն փորձն ընդհանրացնելու և տարածելու խնդիրը դրված է կուսշրջկոմին առընթեր աթեիստական դաստիարակության գիտամեթոդական խորհրդի վրա, որը ղեկավարում է շրջկոմի քարտուղար Ջ. Ջաքարյանը: Կուսկոմիտեի՝ հասարակական հիմունքներով գործող այս մարմնի կազմում ընդգրկվել են կուսակցական-սովետական աշխատողներ, շրջանի գաղափարախոսական հիմնարկների, գերատեսչությունների, հա-



սարակական կազմակերպությունների ղեկավարներ, մամուլի, բուժհիմնարկների ներկայացուցիչներ, պատերազմի և աշխատանքի վետերաններ:

Խորհրդի անդամներն էական օգնություն են ցույց տալիս գիտաաթեիստական դաստիարակության գործին: Նրանք մասնակցում են այդ աշխատանքի ընթացիկ և հեռանկարային պլանների մշակմանը, սահմանում գաղափարախոսական բոլոր հիմնարկների և կազմակերպությունների՝ նշված ոլորտի գործունեության խնդիրները և հիմնական ուղղությունները, մասնակցում են կուսշրջկոմում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, օգնում վերահսկելու աթեիստական դաստիարակության վերաբերյալ ընդունված որոշումների կատարմանը, մեթոդական օգնություն են ցույց տալիս այդ գործով զբաղվող կադրերի պատրաստմանն ու վերապատրաստմանը և այլն:

Կուսշրջկոմը մշտական հոգատարություն է ցուցաբերում գիտական աթեիզմի պրոպագանդայով զբաղվող կադրերի և կազմակերպիչների պատրաստականության, նրանց իրազեկության մակարդակը բարձրացնելու նկատմամբ. կազմակերպվում են սեմինարներ, գիտագործնական կոնֆերանսներ, ընդհանրացվում և տարածվում է ուսանելի փորձը:

Գիտագործնական կոնֆերանսներում զեկուցումներով հանդես են գալիս կուսակցական, սովետական ղեկավար աշխատողներ, գիտնականներ, ժուռնալիստներ, կուլտուրայի և արվեստի գործիչներ:

Շրջկոմը գիտաաթեիստական դաստիարակության աշխատանքը կազմակերպելիս հաշվի է առնում քաղաքում և շրջանում կրոնատածության վիճակը, այդ աշխատանքի ծավալման համար առկա անհրաժեշտ ուժերն ու հնարավորությունները, հենվում կրոնական իրավիճակը բնորոշող հավաստի ինֆորմացիայի վերլուծման վրա:

Գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման, գիտաաթեիստական դաստիարակության ոլորտի ընդլայնման, դրա արդյունավետության բարձրացման կարևորագույն ռեզերվ է կուսակցական ուսուցման համակարգը: Ունկնդիրների գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման համար մեծ հնարավորություններ են ստեղծված գիտական կոմունիզմի դպրոցներում, ուր լայնորեն օգտագործվում է մատուցվող նյութի աթեիստական պոտենցիալը:

Կոմունիստների և անկուսակցականների քաղաքական լուսավորության գործին աջակցություն են ցույց տալիս նաև Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության համակարգում գործող հանրապետական գիտական աթեիզմի տան աշխատողները, որոնք սերտ կապեր են հաստատել էջմիածնի կուսակցական և հասարակական կազմակերպությունների, կուլտուր-լուսավորական հիմնարկների հետ, ծանոթացել են աթեիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքի վիճակին, նպաստում են դրա աշխուժացմանը:

Շրջանում լավ ավանդույթ է դարձել աթեիզմի օրերի անցկացումը: Այդ օրերին Երևանից էջմիածին ժամանած դասախոսներին միանում են նաև տեղի կադրերը, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողները, ժողովրդական ստեղծագործության կոլեկտիվները: Աթեիստական գիտելիքների օրվա ծրագրում օգտագործվում են հակակրոնական դաստիարակության զանազան ձևեր. դասախոսների ելույթներ աշխատանքային կոլեկտիվներում, ձեռնարկությունների և հիմնարկների ղեկավարների սեմինարներ, պրոպագանդիստների մեթոդական կոնֆերանսներ, ագիտատորների համար կազմակերպվող պարապմունքներ, մտավորականության ժողովներ, գրադարաններում և կուլտուրայի պալատում երեխաների հետ հարց ու պատասխանի երեկոներ և այլն: Ակումբագրադարանային տեխնիկումում գործում են աթեիզմի ժողովրդական համալսարան, գործարաններում՝ լեկտորիումներ:

Շրջանում մեծ տարածում է գտել «Наука и религия» ամսագիրը: Նախատեսվում է կուլտուրայի տանը կից կազմակերպել ամսագրի ակումբ, որի շուրջը կհամախմբվեն բոլոր նրանք, ովքեր հետաքրքրվում են գիտական աթեիզմով և կրոնի քննադատության պրոբլեմներով: Ակումբի անդամները սիստեմատիկաբար ինֆորմացիա կստանան ամսագրում հրապարակվող նյութերի, նոր լույս տեսած աթեիստական գրականության մասին,

*կկազմակերպեն ընթերցողների կոնֆերանսներ, կարդացված նյութի կոլեկտիվ քննարկումներ և այլն։*

*Կուսշրջկոմը բովանդակալից աշխատանք է ծավալել բնակչության կենցաղում սոցիալիստական ապրելակերպի, քաղաքացիական նոր ծեսերի արմատավորման համար։ Տարին երկու անգամ (գարնանը և աշնանը) Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանի մոտ տեղի են ունենում «Զինակոչիկի» համաշրջանային օրեր։*

*Կոլեկտիվի գործերի համար անձնական պատասխանատվության բարձրացմանը, սեփական աշխատանքի հասարակական նշանակության գիտակցմանը մեծապես օգնում են աշխատանքի ընդունման, առաջին աշխատավարձի հանձնման հանդիսությունները, սոցիալիստական մրցության հաղթողների, աշխատավորական գերդաստանների մեծարումները, որոնք ավանդույթ են դարձել գրեթե բոլոր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում։*

*Զգալիորեն ակտիվացել է սովետական քաղաքացու կոչման հետ կապված ծիսակատարությունը։ Անձնագրերը հանձնվում են դպրոցներում, կուլտուրայի տներում՝ հանդիսավոր պայմաններում։ Վերջին տարիներին շրջանի կուսակցական, սովետական, կոմերիտական կազմակերպությունների ջանքերով բնակչության կենցաղում հաստատուն տեղ են գրավել ամուսնության հանդիսավոր գրանցումները, կոմերիտական-երիտասարդական հարսանիքները, անվանակոչության և բնակարանամուտի հանդիսությունները։*

*Շրջանի յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում ստեղծվում են կրոնատածության վիճակը և աթեիզմի արմատավորումը բնութագրող անձնագրեր։ Կուսակցական կազմակերպություններում, արտադրական տարբեր օղակներում հաստատվել են աթեիստական աշխատանքի կազմակերպիչներ։ Երեխաների աթեիստական դաստիարակությունը բարելավելու նպատակով ուսումնասիրվում են ընտանիքներում երեխաների դաստիարակության պայմանները, ընտրվում են աշխատանքի ներգործուն ձևեր և մեթոդներ։ Համապատասխան աշխատանք է տարվում յուրաքանչյուր դպրոցում աթեիզմի կաբինետներ կամ թանգարաններ ստեղծելու համար։*

*Շրջանում գիտաաթեիստական պրոպագանդայի հետագա կատարելագործումը պայմանավորված է գիտատեսական և մասնագիտական լայն մտահորիզոնի տեր կադրերի առկայությամբ։ Առայժմ աթեիզմի պրոպագանդան հիմնականում իրականացնում են շրջանի մտավորականները, որոնց մեջ զգալի տոկոս են կազմում մանկավարժները։ Բայց նրանց աթեիստական գիտելիքները հաճախ իրենց դասավանդած առարկայի սահմաններից այն կողմ չեն անցնում, իսկ դա ներկա պահանջներին չի համապատասխանում։ Անհրաժեշտ են խոր գիտելիքներ կրոնի և աթեիզմի մասին՝ կրոնի դոգմաները գիտականորեն քննադատելու համար։ Նպատակահարմար է զեկուցումների, դասախոսությունների թեմատիկան թարմացնել այն հաշվով, որպեսզի դրանցում տեղ գտնեն աթեիստական գիտության արդի նվաճումները։*

*Գիտաաթեիստական աշխատանքի գիտամեթոդական խորհուրդը հնարավորություններ ունի ընդլայնելու իր գործունեության շրջանակները՝ նիստերում լսելու կուսկազմակերպությունների քարտուղարների, արհմիութենական, կոմերիտական ու մյուս հասարակական կազմակերպությունների ղեկավարների, այդ գործում ընդգրկված ընկերների ինֆորմացիան աթեիստական աշխատանքի վիճակի մասին և համապատասխան հանձնարարականներ տալու։*

*Ուղեցույց ունենալով «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ ՀԿԿ Էջմիածնի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, գաղափարախոսական աշխատանքի բոլոր օղակները, կատարելագործելով բնակչության աթեիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները, հետևողականորեն և անշեղորեն լուծում են աշխատավորների գիտամատերիալիստական աշխարհայացքով զինելու խնդիրը։*

---



# ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔԻ ՏԱՐԵԳԻՐԸ

ԱՐԴԻ ՍՈՎԵՏԱՀԱՅ գրականության առավել նշանավոր ներկայացուցիչներից է Սերո Խանզադյանը։ Նա ստեղծել է այնպիսի բարձրարժեք գործեր, որոնցում տրոփում է մեր ժամանակակցի սիրտը, հնչում հարազատ ժողովրդի ոգու ձայնը։ Լայն են Խանզադյանի գեղարվեստական ընդգրկման շրջանակները. մեր կյանքի երեկն ու այսօրը, մոտիկ ու հեռու անցյալը, գյուղն ու քաղաքը, հայրենի բնաշխարհն ու նրա մարդիկ։ Դրանք աչքի են ընկնում նաև ժանրային բազմազանությամբ։ Լինելով հիմնականում վիպասան՝ Խանզադյանը գրել է նաև պատմվածքներ, վիպակներ, ուղեգրություններ, հուշեր, քննադատական ու հրապարակախոսական հոդվածներ, որոնք սերտորեն առնչվում են մեր կյանքին և արտահայտում նրա հեղափոխական բովանդակությունը։

Խանզադյանի ստեղծագործության առաջատար թեման արդիականությունն է, ժամանակակից սովետական մարդն իր գործերով ու խոհերով։ Նա ձգտում է թափանցել մեր իրականության մեջ կատարվող պրոցեսների խորքը և վեր հանել այն նորն ու առաջավորը, որոնց պատկանում է ապագան։ Գրողը կյանքը դիտում և պատկերում է իր զարգացման հեռանկարի մեջ, ուստի և նրա ստեղծագործությունը շնչում է կենսահաստատ լավատեսությամբ։

Ինչպես յուրաքանչյուր ճշմարիտ արվեստագետ, Խանզադյանը նույնպես սնվում է ազգային արմատից, բայց տեղական նյութի վրա կարողանում է արծարծել այնպիսի կենսական պրոբլեմներ, կերտել այնպիսի տպավորիչ կերպարներ, որոնք հուզում են նաև այլազգի ընթերցողին։

Իր գրական առաջին իսկ քայլերից Խանզադյանը դրսևորել է կյանքի լայն ճանաչողություն, պատմողական ու նկարագրական մեծ վարպետություն։ Հետաքրքրական է, որ հենց սկզբից նա հանդես է եկել որպես էպիկական մեծ շնչի գրող՝ հրապարակ հանելով ծավալուն կտավի գործ։

Խանզադյանը գրականություն եկավ կյանքից, ավելի ստույգ՝ ռազմաճակատից, ուր կրակի առաջին գծում մարտնչում էր և՛ զենքով, և՛ գրչով։ Հենց այդ մթնոլորտում էլ ծնունդ առավ նրա առաջին վեպը՝ **Մեր գնդի մարդիկ** (1950 թ.), որով նշանավորվեց հեղինակի գրական արևածագը։ Երիտասարդ գրողի մուտքը ջերմորեն ողջունեցին խոսքի այնպիսի վարպետներ, ինչպիսիք են Դ. Դեմիրճյանը և Ստ. Զորյանը։ Նրանք բարձր գնահատեցին Խանզադյանի ստեղծագործական տվյալները՝ «անբռնազբոս և կենդանի պատումը», պարզ ու հասարակ լեզուն, ինքնուրույնությունը, ինչպես և «դիտողականությունն ու վարակելու ունակությունը»։ Դրա հետ միասին արեցին մի շարք արժեքավոր դիտողություններ, որոնք հեղինակին մղեցին անդրադառնալու իր վեպին և կատարելու անհրաժեշտ շտկումներ։

Վերնագիրն իսկ հուշում է, որ Խանզադյանի վեպը պատկերում է մի գնդի մարդկանց մարտական ուղին, որն անցնում է կրակների միջով։ **Մայոր Սաֆոնովի գնդի մարդիկ** ճաշակում են և՛ նահանջի դառնությունը, երբ ստիպված թողնում էին հայրենի գյուղերն ու դաշտերը, և՛ հաղթական գրոհների բերկրանքը, երբ արդեն առաջ էին շարժվում՝ հետապնդելով վայրագ թշնամուն...։ Ահա այդ մարդկանց կյանքի ու պայքարի օրինակով Խանզադյանը ցույց է տալիս, թե ինչպես հայրենիքի պաշտպանության համար մղված մարտերում կոփվում է սովետական հայրենասերի ոգին, ամրապնդվում են մեր երկրի բազմազգ ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը։ Այդ տեսակետից ճիշտ է վարվել հեղինակը՝ վիպական սյուժեի առանցքը դարձնելով «եղբայրական դասակի» մարտական առօրյան։ Դասակի ազգային կազմն ինքնին մի եղբայրական ընտանիք է, որտեղ կարելի է հանդիպել ռուս, հայ, ադրբեջանցի, թաթար և այլ ազգերի զավակների։ Նրանցից յուրաքանչյուրն ունի իր ազգային դիմագիծն ու սրույն խառնվածքը։

Անհնար է մոռանալ Կոմարովի կարոտաբաղձ, բայց խրոխտ ձայնը, Յակուբովի «երկարածոր բայաթին», Կարո Մինասյանի հորովելը: Հիշենք, թե ռազմաճակատ մեկնող Մինասյանը գնացքից դուրս նայելով ինչպիսի մորմոքով ասում է. «Ա՜խ, ի՜նչ արտեր են, հիմա ո՞վ պիտի հնձի»:

Արտերի կամ հողի նկատմամբ տածած այդ սերը բնորոշ է դասակի ողջ անձնակազմին: Նրանք ուժ ու եռանդ են քաղում հայրենի հողից, բայց և տխրում՝ տեսնելով չհնձված արտերը, որ խորհրդանշում են ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակման հետևանքով ընդհատված մեր խաղաղ կյանքը: Մարդիկ զբաղված էին ստեղծարար աշխատանքով, բայցահա պատերազմն ստիպեց նրանց զենք վերցնել և մարտնչել մահ ու կործանում բերող ֆաշիզմի դեմ: Տարբեր են այդ մարդկանց երգն ու լեզուն, բայց բոլորն էլ տոգորված են միևնույն՝ հայրենասիրական ոգով, հաղթանակի հավատով:

Բաջածանոթ ճակատային կյանքին ու մարդկանց՝ Խանզադյանը կարողացել է կենսական նյութը դարձնել գեղարվեստական ճշմարտություն և դրանով համակել ընթերցողին: Մենք տեսնում ենք պատերազմի ողջ դաժանությունն ու նրա բոցերում կոփվող սովետական հայրենասերի բարոյական վեհ հատկանիշները: Դա երևում է գործող անձանց, մասնավորապես շարքային մարդկանց կերպարներից, որոնք արտահայտում են ժամանակի շունչն ու ոգին:

Առանձնապես հաջողված են գնդի հրամանատար Սաֆոնովի, քաղղեկ Վոլգինի կերպարները. հանձինս նրանց հեղինակը ներկայացրել է գործին գիտակ, խոհեմ ու հավասարակշիռ հրամանատարի ու քաղաշխատողի: Առավել հետաքրքրական ու կենդանի է կերտված Աշոտ Սյունեցյանի կերպարը: Վերջինս փաստորեն դառնում է վեպի գլխավոր հերոսը: Կյանքի դժվարին ուղի է անցել նա, բայց երբեք չի կորցրել լավատեսությունը: Միշտ եղել է կրակագծում, ուր և աչքի է ընկել իր քաջությամբ ու մարդկայնությամբ: Սրտառուչ է նրա սերը բժշկուհի Աշխենի նկատմամբ, որ սկսվել էր տակավին պատերազմից առաջ և շարունակվում է ռազմաճակատում: Նրանց սերը դառնում է ոգեշնչման աղբյուր թե՛ մեկի և թե մյուսի համար: Եվ երբ մոտ է փայփայած հաղթանակը, ուրեմն և իրենց երջանկության ժամը, զոհվում է Աշխենը: Սերն ու վիշտը և ընդհանրապես սիրահար այդ հոգիների ապրումները հեղինակը պատկերել է քնարական շնչով ու վարակիչ ջերմությամբ:

**Մեր գնդի մարդիկ** վեպը, լինելով հեղինակի առաջին ծավալուն գործը, իհարկե, զերծ չէ թերություններից, բայց, դրանցով հանդերձ, այն ուշագրավ երևույթ է իր թարմ շնչով, մարդկային բնավորության ու հոգեբանության առանձին կողմերի ցուցադրմամբ և հայրենասիրական պաթոսով: Հեղինակը վարպետ պատմող է, տիրապետում է նյութին, վառ ու կենդանի նկարագրում իր տեսածն ու ապրածը: Սրանք հենց այն հատկանիշներն են, որոնք ժամանակի ընթացքում խորանալով ու բյուրեղանալով՝ դարձան Խանզադյանի ստեղծագործական նկարագրի էական գծերը:

Այսպիսով, սկիզբը, ինչպես ասում են, խոստումնալից էր:

Առաջին վեպից հետո Խանզադյանը հրապարակեց տարբեր թեմաներով գրած պատմվածքներ, վիպակներ, վեպեր, բայց երբեք չմոռացավ Մեծ հայրենականի հերոսամարտերը: Ահա թե ինչու տասնամյակներ անց նա նորից անդրադարձավ այդ թեմային, գրելով **Երեք տարի 291 օր** ծավալուն հուշապատումը (1972 թ.), որի համար հեղինակին շնորհվեց Հայկական ՍՍՀ պետական մրցանակ:

Գիրքն ունի ենթավերնագիր՝ «Ռազմաճակատային օրագիր», որը, սակայն, միայն մասամբ է համապատասխանում նրա ժանրային բնույթին: Ճիշտ է, նյութը մատուցված է օրագրային ձևով, բայց դա սովորական օրագրություն չէ, այլ գեղարվեստական տարրերով հագեցած մի երկասիրություն, որը շատ դեպքերում հասնում է վիպական ստեղծագործության աստիճանի: Ծարադրանքի կենտրոնում ինքը՝ հեղինակն է. հարազատ մնալով դեպքերի ու դեմքերի վավերականությանը՝ նա կարողացել է հաճախ դուրս գալ այդ շրջանակից և հասնել լուրջ ընդհանրացումների: Դրա շնորհիվ պատկերած իրադարձություններն ու անձինք, կոնկրետ լինելով հանդերձ, դառնում են տիպական և արտահայտում ահեղ օրերի մարտական ոգին:

Դա վերաբերում է ամենից առաջ հեղինակին. թեև նա պատմում է առաջին դեմքով, բայց կողմնակի դիտող կամ սոսկ նկարագրող չէ, այլ իրադարձությունների ակտիվ մասնակից: Ներկայացվում է լեռնային շրջանից բանակ մեկնած պատանու ուղին, որն անցնում է փորձությունների բովով: Ահա նա կրակագծում է, որտեղ առաջին անգամ տեսնում է գնդակոծված դաշտեր, վիրավոր մարտիկներ, անթաղ դիակներ, «սևացած մսագնդեր»... Ծանր է տպավորությունը և, չնայած դրան, սովետական ռազմիկները, հաղթահարելով քաղցն ու անքնությունը, արիաբար ետ են մղում թշնամու հարձակումները: Նրանք դիմադրում են հաստատակամ, մարտնչում երբեմն «ջարդված ոտքով, կոտրված թևով...», ու թեև նսպառնում են շարքերը, բայց նրանցից ոչ ոք չի թողնում դիրքերը. «...այս ի՜նչ արիություն, քաջություն է, որ ունեն մեր տղաները»,— բացականչում է Խանզադյանը՝ հիացած իր ռազմաճակատային ընկերների մարտական կորովով: Ինչե՞ր ասես, որ չեն տեսնում այդ տղաները. նահանջ, շրջապատում, հաղթական գրոհ և հետապնդում թշնամուն— ահա այն հանգամանքները, որոնցում գործում են նրանք՝ դրսևորելով անընկճելի կամք ու համառություն: Մի պահ թվում է, թե նորից ենք հանդիպում «մեր գնդի մարդկանց», հաղորդակից դառնում նրանց ապրումներին: Բայց դա սոսկ տպավորություն է, որը ցրվում է, երբ խորանում ենք «Օրագրի» բովանդակության մեջ: Պարզվում է, որ հանգամանքների ու գործող անձանց որոշ նմանությամբ հանդերձ (այդ անխուսափելի է), «Օրագիրը» տալիս է ճակատային կյանքի ստույգապատում նկարագիր: Նրանում պատկերված գործողություններն ու մարդիկ կոնկրետ են, վավերական. դրա հետ մեկտեղ այստեղ հեղինակի տեսադաշտն անհամեմատ ավելի լայն է, որի շնորհիվ նա կարողացել է պատկերացում տալ ո՛չ միայն տվյալ զորամասի, այլև ռազմաճակատի և նույնիսկ բովանդակ երկրի կյանքի մասին:

Օրագրում հեղինակը տարբեր առիթներով անդրադարձել է թիկունքի և ռազմաճակատի կապին, համոզիչ կերպով ցույց տվել, որ կռվող զինվորին ոգեշնչում է թիկունքը, որի հարազատ ձայնը տարբեր ձևերով հասնում է ռազմադաշտ: Այդ առընչությամբ հիշատակվում է հայ ժողովրդի նամակը՝ ուղղված ռազմաճակատում մարտնչող իր զավակներին: Մեծ է նամակի թողած տպավորությունը ճակատայինների վրա. «Սիրտս թպրտում է հուզմունքից,— գրել է Խանզադյանը,— խոսում է հայրենի հողը՝ իր հազարամյա լեզվով, իր մայրական խստությամբ ու գուրգուրանքով»:

Այդ նամակը, ինչպես և հարազատներից ստացած նամակներն ու ծանրոցները, տեղեկությունները, ոգեշնչում են մարտիկին, ամրապնդում նրա կամքը թշնամու դեմ մղվող պայքարում: Դրանում նվազ դեր չեն խաղում գրականությունն ու արվեստը: Բնորոշ է, որ «Օրագրի» հեղինակն իր հետ բանակ էր տարել Իսահակյանի **Երգերն ու վերքերը** և **Արևմտահայ բանաստեղծներ** ժողովածուն: Ռազմաճակատում արդեն նրա ձեռքն են ընկնում այլ գործեր (Շիրազի, Ն. Զարյանի, Մուրացանի ու այլոց), որոնք նույնպես հայրենասիրական նոր լիցք են հաղորդում ճակատայինին:

ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՂԹԱԿԱՆ ավարտից հետո ևս Խանզադյանը քայլել է իր հերոսների հետ, ապրել նրանց հոգսերով ու տագնապներով:

Վերադառնալով խաղաղ աշխատանքի՝ երեկվա զինվորն իր ողջ եռանդն ու ջանքերն ի սպաս է դրել պատերազմի պատճառած վերքերը բուժելուն, ժողովրդի բարօրության մեծ գործին: Կյանքում և մարդկանց հոգեբանության մեջ տեղի են ունեցել լուրջ փոփոխություններ, ժամանակն առաջադրել է նոր խնդիրներ: Այս ամենը հարկավոր էր գեղարվեստորեն իմաստավորել՝ վեր հանելով աշխատավոր մարդու հոգու վեհությունն ու բարձր գիտակցականությունը:

Այդ նպատակի իրականացման ցայտուն արտահայտություններից էր Խանզադյանի **Հողը** վեպը (1954—55 թթ.), որը անմիջական, անկեղծ հետաքրքրությամբ ընդունվեց ընթերցող լայն հասարակայնության կողմից: Եվ դա այն պատճառով, որ այստեղ հեղինակը շոշափել է կենսական նշանակություն ունեցող շատ հարցեր: Ժողովուրդը կապված է հողին և նրա պես անմահ է. այս գաղափարը կարմիր թելի պես անցնում է Խանզադյանի ստեղծագործության միջով՝ **Մեր գնդի մարդիկ** վեպից սկսած:

Հողի ու ժողովրդի միասնության գաղափարով է տոգորված նաև այս վեպը, որտեղ հեղինակը լայնորեն պատկերում է հետպատերազմյան գյուղի կյանքն իր բնորոշ գծերով ու տիպական հանգամանքներով: Նրան հաջողվել է ստեղծել կենսական կոնֆլիկտ, որի շուրջը և հյուսվում են հերոսների փոխհարաբերություններն ու բախումները: Պայքարի տարբեր ծայրերում են, մի կողմից՝ կոլտնտեսության նախագահ Հասրաթյանն ու նրա կողմնակիցները, մյուս կողմից՝ Մովսիսյանը, Մաշուրյանը, Արշակը, Մարիամը և գյուղի այլ

առաջավոր մարդիկ, վեպում գործող ներհակ ուժեր, որոնց միջև մղվող պայքարի առնչությամբ հեղինակն արծարծում է մի շարք կարևոր հարցեր՝ կապված կուսակցական ղեկավարության, կոմունիստական բարոյականության ու կենցաղի առանձին երևույթների հետ: Այդ կապակցությամբ առանձնապես ուշագրավ են վեպի դրական հերոսները, որոնց միացնում է հասարակական պարտքի գիտակցությունը: Տարբեր կենսագրություն ունեցող, բայց կյանքի միևնույն ճանապարհ անցած այդ մարդիկ տարբեր երանգներով արտացոլում են սոցիալիստական անհատականության լավագույն հատկանիշները— ջերմ սեր հայրենի հողի, կյանքի ու աշխատանքի նկատմամբ, սկզբունքայնություն և անհանդուրժողականություն թերությունների նկատմամբ:

Գլխավոր հերոսների կողքին Խանզադյանը կերտել է նաև շարքային մարդկանց կերպարներ (Արշակ, Մարիամ, Արամիկ և այլն), որոնք օժտված են արժանապատվության բարձր զգացումով ու լավատեսությամբ: Չխամրող գույներով են ներկայացված մեծահասակ կոլտնտեսականների՝ բրուտ Մանասարի, որսկան Ալետի և, հատկապես, Բաղդասար պապի կոլորիտային կերպարները: Նրանցից յուրաքանչյուրը, իր մեջ մարմնավորելով ժողովրդի բազմափորձ կյանքից բխող իմաստությունը, սոցիալիստական համակեցության պայմաններում հարստացել է հոգեբանության նոր գծերով և երիտասարդ սերնդին է հաղորդում թե՛ իր փորձը և թե նորի նկատմամբ ունեցած նվիրվածությունը: Ի տարբերություն մեր որոշ հեղինակների, որոնք, մեղանչելով ճշմարտության դեմ, հաճախ նախապաշարումների ու հնավանդ սովորությունների ուժը խտացնում են ծերերի մեջ, Խանզադյանը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ տիպականն այդ չէ, նրանք ևս փոխվում, զարգանում են նոր հարաբերություններին համապատասխան:

Ընդհանուրի շահերով ապրող և մեր առաջընթացի հեռանկարով ոգեշնչված այդ մարդիկ՝ հին և նոր սերնդի լավագույն ներկայացուցիչները, իրենց բոլոր ջանքերը նվիրաբերել են հարազատ կոլտնտեսության բարգավաճման գործին: Նրանք վճռականորեն մերժում են գյուղը քոչեցնելու միտքը և համոզված են, որ հենց տեղում՝ Որոտանի կիրճում կարելի է և պետք է առաջ մղել կոլտնտեսային արտադրությունը: Ոչ թե լքել հողը, օտարանալ, այլ սիրել այն, խնամքով վերաբերվել, տքնել ու արգասավորել: Չի կարելի խռովել հայրենի հողից, որը կյանք է պարգևել ու հեռարան դարձել իր զավակներին: Հողի, երկրի ու ժողովրդի սերտ միասնության գաղափարով է ներթափանցված վիպական շարադրանքը, որը փայլում է բնաշխարհի ու նրա մարդկանց վառ ու կենդանի նկարագրությամբ:

Խանզադյանն աշխատանքը համարում է ոչ միայն որպես կյանքի աղբյուր, այլև մարդկանց հոգևոր աշխարհի հետ սերտորեն կապված ստեղծագործական բարդ պրոցես: Աշխատանքի թեման նրա մոտստանում է մեծանշանակ իմաստ և արտահայտում նոր կյանք կառուցող սովետական մարդկանց հերոսական ոգին:

Այդ առումով նշանակալի երևույթ է Խանզադյանի **Քաջարանը** (1965 թ.), որն արտացոլում է արդեն նոր, արդյունաբերական քաղաքի մարդկանց կյանքն ու առօրյան՝ կապված այն արմատական տեղաշարժերի հետ, որ կատարվեցին մեր երկրում հիսունական թվականների կեսերից: Հայաստանի լեռնարդյունաբերական հսկաներից մեկի՝ Քաջարանի, վերակերտման պրոցեսում կերպավորվում են նոր մարդիկ՝ իրենց հոգեբանության ու բնավորության ուրույն գծերով. ինչպես հեղինակն է ասում, «Քաջարանում դղրդոցով խորտակվում էր հազարամյակներ հարատևած մի հնություն», և նրա տեղը «աշխարհի կտուրի վրա հիմնավորվում էր նոր աշխարհ»:

Ահա այդ «նոր աշխարհի» կառուցման ֆոնի վրա կազմավորվում է աշխատանքային մի հզոր կոլեկտիվ՝ բաղկացած տարբեր խառնվածքի ու նկարագրի տեր մարդկանցից: Այստեղ կան նաև մեր հայրենիքի հեռավոր անկյուններից եկած աշխատավորներ, որոնք տեղացիների հետ միասին կառուցում են նոր Քաջարանը: Շինարարության ընթացքում, աշխատանքային եռուզեռի մեջ, վերափոխվում են նաև իրենք՝ մարդիկ, ձևավորվում են նոր սովորություններ ու կապեր, նոր իմաստ է ստանում անհատի ու հասարակության փոխհարաբերությունը:

Վեպի գլխավոր արժանիքներից մեկն էլ այն է, որ հեղինակը համարձակորեն բացահայտում է մեր առաջընթացում առկա դժվարությունները, ցույց տալիս այն ռետրոգրադ կողմերն ու նախապաշարումները, որոնց հաղթահարման բովում կոփվում է նոր մարդու բնավորությունը: Հարթ ու սահուն չէ Քաջարանը կառուցող մարդկանց կյանքի ուղին, այն ձգվում է դժվարանց առապարներով, ինչպես նոր բնավանը տանող ճանապարհը... Բայց նրանք շուտ հուսահատվողներից չեն, գիտեն տոկալ ու պայքարել լավի ու գեղեցկի, իրենց պատվի և իրավունքների համար:

Հենց այդպիսին է վեպի գլխավոր հերոս Բագրատ Ադամյանը՝ քաջարանցի հանքափորի որդին: Նա մասնագիտությամբ լեռնային ինժեներ է, բազմակողմանիորեն զարգացած, հայրենիքին նվիրված ազնիվ կոմունիստ. ճաշակել է կյանքի դառնությունները, հալածվել ու ամբաստանվել: Բայց տառապանքի ուղիներով անցած Բագրատը երբեք չի հուսահատվել, ներքուստ համոզված է եղել, որ վերջ կտրվի կամայականություններին: Այդ հավատով էլ նա Քաջարանում գործի է անցնում: Աշխատանքում աստիճանաբար դրսևորվում են նրա լավագույն հատկանիշները՝ աշխատասիրություն, ազնվություն, ընկերասիրություն և սկզբունքայնություն: Նա դառնում է ճանաչված ու սիրված դեմք, հաղթանակում է արդարությունը, և վերականգնվում են նրա քաղաքացիական ու կուսակցական իրավունքները:

Դրական կերպարներից անմոռաց է կուսկոմիտեի քարտուղար Վահան Մինասյանը, որն աչքի է ընկնում սկզբունքայնությամբ ու մարդկանց նկատմամբ տածած հոգատարությամբ: Սերտորեն կապված է կոլեկտիվի հետ, մոտիկից գիտե աշխատավորների հոգսերն ու պահանջները և հարկ եղած դեպքում օգնում է նրանց: Նա իսկական կուսակցական աշխատող է, համեստ ու շրջահայաց, արդարամիտ ու առաքինի, որոնց շնորհիվ վայելում է շրջապատի հարգանքն ու սերը: Վեպում գործող անձինք, սակավ բացառությամբ, կենդանի ու լիարյուն կերպարներ են՝ գծված հմուտ գրչով: Կարելի է հիշել Փոլադյանին, Մայային, Շուշանին, Աթագ ազուն, Մուքայել ափոյին և այլոց, որոնք տպավորվում են ընթերցողի հիշողության մեջ:

Աշխատանքի թեմայի գեղարվեստական մշակման ասպարեզում Խանզադյանը դրսևորել է որոշակի հետևողականություն: Նա իր մեծ ու փոքր ծավալի երկերում հաճախ է անդրադարձել աշխատանքի և աշխատավոր մարդու պատկերմանը: Եվ միանգամայն հասկանալի է, որ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կառուցողների կյանքն ու աշխատանքը վերարտադրելուց հետո Խանզադյանը համարձակորեն Արփա—Սևան ջրատարի շինարարների աշխատանքային առօրյայի ու սխրանքի գեղարվեստական բնութագրմանը նվիրեց **Սևանի լուսաբացը** վեպը (1975 թ.):

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ իրականության պատկերման հետ մեկտեղ Խանզադյանն զբաղվել է նաև պատմական անցյալի գեղարվեստական լուսաբանությամբ: Իր պատմագեղարվեստական երկերով նա հաստատուն տեղ է նվաճել ավագ գրչակիցներ Դեմիրճյանի և Զորյանի կողքին:

Պատմական անցյալին դիմելը Խանզադյանի համար պատահականություն չէ, այլ ժամանակակից կյանքով ապրող արվեստագետի հոգեկան պահանջ, որը թելադրում է գեղարվեստորեն իմաստավորել ու գնահատել սերունդների տառապանքով ձեռք բերված կյանքի փորձը: Մյուս կողմից, անցյալը Խանզադյանի համար ոչ միայն դաստիարակության միջոց է, այլև ժողովրդական ոգու, նրա ազգային բնավորության ու հոգեբանության ճանաչման ելակետ: Պատմության փորձի մեջ նա որոնում է հարազատ ժողովրդի կենսագրության այն էջերը, նյութական ու հոգևոր մշակույթի այն արժույթները, որոնք չեն կորցրել իրենց նշանակությունն այսօրվա և վաղվա համար: Ճիշտ է նկատել Խանզադյանը, որ «պետք է անցածը խոր ընկալել, որպեսզի ապագան անսխալ լինի»: Անցյալի փորձն օգնում է մեզ հասկանալու ժողովրդական ոգու ելևէջները, ավելի պարզ տեսնելու այսօրվա խիզախումն ու վաղվա թռիչքը:

Ուստի միանգամայն օրինաչափ է Խանզադյանի մշտական հետաքրքրությունը մեր ժողովրդի պատմահերոսական անցյալի նկատմամբ: Դրա առավել պերճախոս վկայությունն է **Մխիթար Սպարապետը** (1961 թ.), որը ջերմ ընդունելություն գտավ ընթերցողների լայն շրջաններում: Բավական է ասել, որ մեկ տասնամյակում այդ վեպը մեզ մոտ ունեցավ հինգ հրատարակություն:

Ինչո՞վ բացատրել դա, ո՞րն է Խանզադյանի այդ երկի հմայիչ ուժը:

Դա պայմանավորված է ամենից առաջ պատմավեպի գիտական ու գեղարվեստական բարձր արժանիքներով, նրա բովանդակության հարստությամբ ու գաղափարական նպատակասլացությամբ: Հեղինակը վերակենդանացնում է պատմական անցյալը՝ դրա մեջ որոնելով ազատագրական շարժման ժողովրդական ոգին ու հերոսականությունը: Այդ իմաստով բնավ պատահական չէ, որ նա վեպի համար

նյութը վերցրել է XVIII դարի առաջին քառորդի հայոց պատմությունից, երբ ժողովուրդն ազատագրական մարտեր էր մղում թուրքական բռնակալության դեմ:

Հեղինակը լավատեղյակ է իր նկարագրած պատմական անցքերի մասին եղած սկզբնաղբյուրներին, ինչպես և տվյալ ժամանակաշրջանին վերաբերող պատմագիտական հետազոտություններին, որոնց համակողմանի ու նրբանկատ ուսումնասիրությամբ կարողացել է ստեղծել լայնակտավ պատմական մի երկ: Վեպի հիմքում Խանզադյանը դրել է այնպիսի պատմական անցքեր ու անձեր, որոնց ընթացքն ու գործելակերպը պայմանավորված են ոչ թե նեղ-անձնական կրքերով, այլ սոցիալ-քաղաքական հանգամանքներով: Դրա շնորհիվ նրան հաջողվել է վերստեղծել դարաշրջանի հասարակական ու կենցաղային մթնոլորտը, ավելի ցայտուն դարձնել ներհակ ուժերի պայքարի մոտիվները, որոնցով պայմանավորված են վեպի գործողության սրընթաց թափն ու լարվածությունը:

Դրանում էական դեր են խաղացել հեղինակի պատմականության սուր զգացողությունը և ստեղծագործական երևակայությունը: Խանզադյանը զարմանալի խորությամբ զգում է պատմության շունչը և երևակայության ուժով թափանցում հեռավոր անցյալի ծալքերը՝ որոնելով ազգային ինքնագիտակցությունը վառ պահող իրադարձություններ ու դեմքեր: Այդ իսկ նպատակով նա իր ստեղծագործության առանցքը դարձրել է ժողովրդի կյանքի ու պայքարի պատկերումը: Ընթերցողը տեսնում է թուրքական հարստահարիչների դեմ ազատագրական պայքարի ելած ժողովրդական մասսաների հզոր շարժումը, որն իր ընթացքի մեջ է առնում նաև ազնվականության առաջավոր ներկայացուցիչներին: Այդ շարժումը, իր համազգային բնույթով հանդերձ, ընթանում է հակադիր ուժերի դեմ տարվող պայքարով: Այս ևս արտացոլվել է վեպում, որի առաջավոր գաղափարն ազատասիրությունն է և դրա համար անձնվեր մարտնչելը: Այդ գաղափարն է համախմբել երկրի հայրենասեր ուժերին, որոնք միասնաբար ծառանում են բռնության դեմ՝ դրսևորելով մասսայական հերոսություն: Հիշենք Երևանի աշխարհազորայինների վաթսունօրյա հերոսամարտը թուրքական կանոնավոր զորքի դեմ, ինչպես և Մարաղայի, Հալիձորի ճակատամարտերի փայլուն նկարագրությունները: Այդ և ռազմի այլ տեսարանների պատկերմամբ հեղինակը կերտել է ժողովրդի՝ որպես ազատագրական շարժման վճռական ուժի, հավաքական կերպարը:

Վեպի հիմնական մոտիվներից է հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման գաղափարը, որը հեղինակի պատկերմամբ համակել է երկրի բոլոր խավերին: Վերջիններս աղետալի վիճակից դուրս գալու ելքը տեսնում են հզոր Ռուսաստանի հետ միավորվելու մեջ, ուստի և ամեն ջանք գործադրում են այդ ձգտումն իրականացնելու համար: Դրա վկայությունն է այն խանդավառ վերաբերմունքը, որ ցուցաբերում է ժողովուրդը ռուսական պատգամավորության նկատմամբ: Վերջինիս մուտքը Հայաստան առաջ է բերում համընդհանուր ոգևորություն: Վեպի շատ էջեր արտացոլում են և անդրկովկասյան ժողովուրդների՝ հայերի, վրացիների, ադրբեջանցիների միասնությունն ու բարեկամությունը, նրանց բարի-դրացիական հարաբերություններն ու համագործակցությունը, որ պայմանավորված են շահերի ընդհանրությամբ: «Լինենք միաբան»— այս նշանաբանով են գործում հայ, վրաց և ադրբեջանական զորագնդերը, որոնց հանդիպումը Քուռ գետի ափին՝ փոխադարձ սիրո ու նվիրվածության մի սրտառուչ հանդես է:

**Մխիթար Սպարապետ** վեպի գեղարվեստական արժանիքները պայմանավորող էական հանգամանքներից է նրա կերպավորման արվեստը: Խանզադյանն իր վեպի հերոսական բովանդակությանը համապատասխան կերտել է մի ամբողջ շարք կերպարներ, որոնք ունեն սոցիալ-պատմական երանգներ:

Պատմական թեմայի գեղարվեստական արտացոլման նոր և ուշագրավ քայլ էր **Խոսե՛ք, Հայաստանի լեռներ** վեպը (1976 թ.), ուր պատկերված է մեր ժողովրդի պատմության նորագույն շրջանի դրվագներից մեկը. 1915—1921 թվականներին է վերաբերում այն, երբ թուրքական ջարդարարներն առաջ էին տանում իրենց հայաջինջ քաղաքականությունը: Ողբերգական, բայց և հերոսական իրադարձություններով հարուստ մի ժամանակաշրջան է դա, որ հեղինակը վերակենդանացրել է արտահայտիչ գույներով: Պահպանելով ժամանակի ու միջավայրի կոլորիտը՝ նա կարողացել է ստեղծել վիպական այնպիսի սյուժե, որն առավելագույն ուժով դրսևորում է հակադիր կողմերի անզիջում պայքարը: Սյուժեի առանցքը ճանաչված



զորապետներ Խորեն աղայի և Ջիլ Զաքարի ընտանիքների պատմությունն է, որը ներկայացնում է արևմտահայության մռայլ ճակատագիրը: Մեր առջև բացվում է Երզնկայի հայության տառապալից կյանքը— գույքի և անձի անապահովություն, կողոպուտ ու ավեր, կոտորած ու մահ: Այդ ոճրագործություններին հեղինակը հակադրում է ժողովրդի ազատաբաղձ ոգու պոռթկումները՝ ինքնապաշտպանական մարտերը: Աշխատանքի ու խաղաղության իդեալներով ոգեշնչված ժողովուրդը ծառանում է բռնության դեմ, խորապես համոզված իր գործի արդարության մեջ: «Ստահակ պիտի լինի մարդ, որ մարդասպանի հանդեպ գթասեր մնա»,— ասում է վեպի գլխավոր հերոս Ներսեհ Չաուշը՝ դրանով իսկ արտահայտելով ժողովրդական ցասման ու պայքարի էությունը: Ընդդիմադրել, կռվել բռնակալ ուժերի դեմ և արյամբ պաշտպանել ապրելու, գոյատևելու իրավունքը,— այս գաղափարն է մարմնավորված վեպի դրական հերոսների կերպարներում:

Այն էլ նկատենք, որ վեպը թեև վերարտադրում է ժողովրդի ծանր վիճակը, ցուցադրում նրա կյանքի մռայլ ու ճնշող պատկերները, բայց շնչում է խոր լավատեսությամբ: «Կործանում կա, բայց ոչ՝ վախճան»,— ահա այն կենսահաստատ ոգին, որ հերոսական պայքարի է մղում մարդկանց ու նրանց մեջ ամրապնդում այն հավատը, որ «մենք չպետք է վերջ ունենանք»:

Այս հավատով են ապրում ու գործում վեպի դրական հերոսները, որոնք վճռական մարտի են ելել թուրքական բռնակալության դեմ: Դա, իրոք, հերոսական ընդվզում է, որին ակտիվ մասնակցում են ժողովրդի ներկայացուցիչները— հողագործ, հովիվ, դարբին, վարժապետ, ինչպես և կանայք ու պատանիներ: Ոգեշնչված ազատագրական պայքարի գաղափարով՝ նրանք խոյանում են բռնակալ ուժերի դեմ՝ հանգելով այն եզրակացության, որ իրենց փրկության միակ ուղին տանում է դեպի մեծ ու հզոր Ռուսաստանը և Հոկտեմբերով ազատագրված Սովետական Հայաստանը:

Եթե նշված պատմավեպերը կերտված են իրական-պատմական հիմքի վրա, և գործող անձերից շատերը հայտնի դեմքեր են, ապա **Թագուհին հայոց** վեպը (1978 թ.) ընթերցողին տեղափոխում է մեր պատմության դիցաբանական շրջանը, որը ծածկված է խավարի հաստ շերտով: Օգտագործելով հնագույն արձանագրություններից, զանազան աղբյուրներից (եգիպտական, բաբելական, խեթական) և ժողովրդական ավանդույթներից մեզ հասած կցկտուր տեղեկությունները, ինչպես և պատմաբանասիրական նորագույն հետազոտությունները՝ գրողն ստեղծել է ծավալուն մի վեպ, որը հարստացնում է մեր պատկերացումը հայ ժողովրդի նախապատմական անցյալի մասին:

ԽԱՆԶԱԴՅԱՆԻ ԳՐԱԿԱՆ վաստակի անբաժան մասն են կազմում նրա հուշագրություններն ու ուղեգրությունները: 14—15 տարեկանից սկսած՝ Խանզադյանը թափառել է հայրենի երկրի ճամփաներով, շրջագայել նախ իր գավառում, հետո՝ հանրապետությունում և նրա սահմաններից դուրս: Իր տպավորություններն ու հանդիպումները նա դրոշմել է օրագրերում, որոնք և հիմք դարձան **Հայրենապատում** խորագրով աշխատության: Արդեն լույս է տեսել նրա երեք գիրքը: Դա, ըստ էության, վավերական պատմություն է մեր հանրապետության տարածքի վրա եղած գյուղերի ու նրանց մարդկանց մասին: Լինելով մեր մեծ ու փոքր բնակավայրերում՝ Խանզադյանը հավաքել, սիստեմավորել է հսկայական քանակությամբ նյութ և, դրան միացնելով պատմիչների ու ժամանակագիրների հաղորդած տեղեկությունները, կերտել մի երկ, որն ունի հանրագիտական բնույթ: Այն սպառիչ պատկերացում է տալիս տվյալ գյուղի կամ բնակավայրի պատմաաշխարհագրական միջավայրի, մշակութային հուշարձանների, ազգագրական սովորությունների, ժողովրդական բանահյուսության և նրա հին ու նոր նշանավոր մարդկանց մասին: Այդ ամբողջ նյութը հեղինակը մատուցել է իրեն հատուկ վարպետությամբ, որի շնորհիվ աշխատությունը կարդացվում է լարված հետաքրքրությամբ: Նրան հաջողվել է ստեղծել ինքնատիպ մի օրագիր-հիշատակարան, որտեղ արդիական ու պատմական նյութը շաղախված է արվեստագետի նուրբ դիտարկումներով: Նա ոչ միայն արձանագրում է փաստերը, այլև խորհրդածում, դատողություններ անում դրանց շուրջը: Այս հանգամանքն աշխատությունը դարձնում է առավել մատչելի ու հետաքրքրական: Հեղինակը հանդես է գալիս մերթ որպես գրող ու պատմաբան, մերթ որպես հուշագիր ու հրապարակախոս՝ ամեն դեպքում դրսևորելով ժողովրդական կյանքի լայն ճանաչողություն և հայրենասիրական պաթոս:

Հիրավի, միայն՝ ժողովրդի հետ ու նրա մեջ ապրող գրողը կարող է ունենալ այդքան հարուստ կենսական տպավորություններ, իր ժողովրդի պատմության և հոգեվոր մշակույթի այդպիսի փայլուն իմացություն: Դրանից շնորհիվ է, որ **Հայրենապատումը** դառնում է եզակի երևույթ մեր ողջ գրականության մեջ:

Մենք անդրադարձանք Խանզադյանի գլխավորապես ծավալուն երկերին՝ թողնելով վիպակներն ու պատմվածքները, հեքիաթներն ու զրույցները: Եվ դա ոչ թե այն պատճառով, որ պակաս արժեքավոր են, այլ նրա համար, որ Խանզադյանի ստեղծագործական վարպետությունն առավել ուժով դրսևորվել է վիպագրության մեջ: Էպիկական շունչ, ընդգրկման լայնություն, հերոսների կյանքի ու հոգեբանության ամբողջական պատկերում— ահա թե ինչով են հատկանշվում Խանզադյանի վեպերը, որոնք աչքի են ընկնում նաև ազատ, անկաշկանդ պատմելաձևով ու հոյակապ նկարագրություններով...

ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ արգասավոր ճանապարհ է անցել Ս. Խանզադյանը. իր լավագույն երկերով նա լայն ժողովրդականություն է նվաճել մեր երկրում և նրա սահմաններից դուրս: Նրա անունը իրավամբ դասվում է սովետական բազմազգ գրականության ականավոր վարպետների շարքում: Համբավավոր գրողի երկերը ռուսերեն թարգմանության շնորհիվ վաղուց մուտք են գործել միջազգային ընթերցասարան, նրան կարդում են այլալեզու ընթերցողները, որոնք այդ երկերի միջոցով ծանոթանում են մեր ժողովրդի կյանքին ու պատմությանը, Սովետական Հայաստանի անկասելի վերելքին:

Սերո Խանզադյանը 70 տարեկան է, նրա համար կյանքն ամենից առաջ աշխատանք է, որի մեջ է նա տեսնում մարդու գոյության իմաստը: Նա ինքը ստեղծագործական աշխատանքի ու տքնության մի ազնիվ մշակ է, որի «օրը սկսվում է երկրի նոր օրվա հետ՝ բուռն, լավատես, քրտնաջան...»:

Սերո Խանզադյանը հայ գրողներից առաջինը արժանացավ սոցիալիստական **աշխատանքի** հերոսի բարձր կոչման: Գրողի վաստակի բարձր գնահատականը միաժամանակ սովետահայ գրականության նկատմամբ կուսակցության ցուցաբերած հոգատարության մի նոր վառ արտահայտություն է:

**Գ.Ր. ՍԱՐԳՍՅԱՆ**

*Հանձնված է շարվածքի՝ 19.12.85 թ.: Ստորագրված է տպագրության՝ 16.1.86 թ.: Ֆորմատ՝ $70\times108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18.232: Պատվեր՝ 2.825:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*